սռ թամար և գործեցի զանօրէնութիւն [1]։ Եւ [2] այժմ
յայտնեցի որդւոց իմոց զգործս պղծութեան իմոյ.
վասն զի [3] արբեալ էի և ոչ ամաչէի ի պատուիրա-
նացն Աստուծոյ, և առի կին քանանացի։ Մտաւորու-
թեան [4] պէտք են, որդեակք իմ, որ եթէ ըմպէ ոք
գինի [5]. և այս է իմաստութիւն ուրախութեան, զի
մինչ ունիցի ոք գինի՝ պատկառանօք արբցէ. ապա
եթէ անցանէ [6] զսահմանօք, արկանէ ի միտս
ոգա [7] ոգին մոլորութեան, և տայ արբեցելոյն [8] պղ-
ծաբանել և անօրինել, և ոչ յումեքէ ամաչել, այլ
և պարծել եւս ի վերայ ամօթոյն իւրոյ՝ [9] կարծելով
եթէ լաւ [10] իմն գործեաց։ Որ պոռնկի՝ եթէ [11] տուժեա-
գի՝ ոչ զգայ և ի փառաց անկանել ոչ ամաչէ։ Զի
թէպէտ [12] պոռնիկն թագաւոր ոք է՝ մերկացեալ ի թա-
գաւորութենէն ելանէ ծառայել պոռնկութեանն, զոր
օրինակ և ես մերկացեալ եղէ. վասն զի ետու զգա-
ւազանն իմ, այսինքն [13] զցեղին իմոյ զհաստատութիւն,
և զգօտին իմ, այս է զզօրութիւն իմ, և զթագ գլխոյ
իմոյ՝ այսինքն զփառս թագաւորութեան իմոյ. բայց
ապաշխարեալ իմ վասն այսր ամենայնի, միս և գի-
նի ոչ ճաշակեցի մինչեւ ցծերութիւն իմ, և զամե-
նայն [15] ուրախութիւն ոչ տեսի։ Եւ ուսայց զիս Հրեշտակ
Տեառն, զի մինչեւ յաւիտեան [16] կանայք տիրեսցեն եթէ-

1. Ա և Գ. [illegible]. Բ. [illegible]։
2. Ա և Բ. և յայտնեցի...։
3. Գ. զի.
4. Բ. Մտաց պէտք են...։
5. Բ. գինի վասն ուրախութեան՝ իմաստութիւն է. յԳ. պակա-սին բանքս։
6. Ա և Բ. անցանէ ոք։
7. Ա. Բ և Գ. հար։
8. Ա. Բ և Գ. արբեցելոյն. Ա և Բ. պղծաբան լինել։
9. յԱ և յԲ. պակասէ իւրոյ։
10. Ա և Բ. իբրև զլաւ իմն...
11. Ա և Բ. Թէպէտ և...։
12. Ա. Բ և Գ. Թէպէտ և։
13. Ա և Բ. այսինքն ի զօրու-թեան իմ և զթագ գլխոյ իմոյ...։
14. Բ. ապաշխարեալ ունի և յԱստուծոյ ուրախութիւնն ի բաց կե-ցայ, և ոչ տեսի...։
15. Բ. զի ես ինքնաբերաց և ու-րախութեանց՝ պոռնկութեամբ կանայք տիրեսցեն։

թագաւորաց եթէ աղքատաց. և զթագաւորացն առցեն զփառսն, զքաջացն զզօրութիւն և զաղքատացն զաղքատութիւն, զփոքր մի զհամբերութիւն: Արդ պահեցէք, որդեակք իմ, զպահմանս գինւոյ. վասն զի են ի նմա ոգիք չարք չորք. ցանկութիւն ջեռնլոյ [1] և զեխութիւն շահավաճառութեան [2]. եթէ ըմպէք գինի կամիք ուրախ լինել՝ երկիւղիւ Տեառն և պատկառանօք ըմպիցէք: Զի եթէ յուրախութեանն հեռասցի երկիւղն Աստուծոյ, ապա լինի արբեցութիւն և մտանէ անամօթութիւն. և լաւ է ամենևիմբ իսկ ոչ ըմպել գինի, զի մի մեղանչէք [3] բանիւք թշնամանաց և կռւոյ, և զրպարտութեան և պատուիրանազանցութեան Աստուծոյ [4], և կորնչիցիք ի դէպ ժամանակի: Վասն զի և զխորհուրդս Աստուծոյ և զմարդկան [5] օտարոտեայ յայտնէ գինի. որպէս և ես զպատուիրանս Աստուծոյ և զխորհուրդս հօր իմոյ Յակոբայ՝ յայտնեցի քանանացւոյն Բերսաւէի, որում հրաման ետ Տէր ոչ յայտնել, վասն զի պատերազմաց և խռովութեան պատճառք է գինին:

Պատուիրեմ [6] ձեզ, որդեակք իմ, մի սիրէք զարծաթ և մի զհայելն ի գեղեցկութիւն կանանց. զի վասն արծաթոյ և գեղեցկութեան կանանց [7] մոլորեցայ ես ի Բերսաւէ քանանացւոյ. զի գիտեմ ես եթէ վասն երկուցս այս լինելոց է ազգս այս ի պոռնկութիւն. վասն զի [8] զիմաստուն արս յորդւոց իմոց այլայլեսցեն, և զթագաւորութիւն Յուդայի խոնարհեցուսցեն՝ զոր ետ ինձ Տէր վասն հնազանդութեան իմ հօր իմոյ [9]. զի [10] ոչ երբեք տրտմեցուցի զՅակոբ հայր իմ [11]

1. Բ. ընտանութեան:
2. Ա. Բ և Գ. շահավաճառութեան:
3. Ա և Բ. մեղիցուք:
4 Գ. Տեառն:
5. Գ. և մարդկան յայտնի էինին:
6. Բ. պատուիրելով պատ...:
7. Բ. խոնլ... կանանցն:
8. Ա. Բ և Գ. վասն զի, և:
9. Ուղղեցաւ ըստ Բ. զի ըն… գիրն և այլք գնէին հնազանդութեան հօրն:
10. Բ. տանջի:
11. Բ. հայր իմ, վասն զի զանձնոյ զոր ամեր ամնէի:

բանիւք իմովք. վասն զի զամենայն ինչ զոր և ասէր առնէի: Եւ Իսահակ հայր հօր իմոյ օրհնեաց զիս, զի թագաւորեցից ի վերայ Իսրայելի. և Իսահակ նմանապէս յաւելլու[1] յօրհնութիւնսն. յաղագս[2] որոյ ես ճանաչեմ[3], զի յինէն հաստատեսցի թագաւորութիւն. քանզի կարդացի ես ի գիրսն Ենովքայ արդարոյ, թէ՞ որքան չարիս[4] գործիցէք ի ժամանակի կատարածի: Արդ պահեցէք, որդեակք իմ, զանձինս[5] ձեր ի խառնակութենէ և յարծաթսիրութենէ, և լուարուք Յուդայի հօր ձերոյ[6]. վասն զի արծաթսիրութիւն[7] որոչէ յօրինացն Աստուծոյ և կուրացուցանէ զխորհուրդս հոգւոց, և ամբարտաւանութիւն ուսուցանէ. և ոչ տայ առն ողորմել ի վերայ մերձաւորաց[8] իւրոց. մերժէ զհոգի նորա յամենայն բարութեանց, և պաշարէ զնա ի ցաւս և ի հեծութիւնս, և մաշէ զմարմին նորա, և զողջակիզօք Տեառն խաղ առնէ. և մարգարէի խօսողի ոչ լսէ, և բանից բարեպաշտից[9] ընդդէմ դառնայ: Որդեակք իմ, արծաթսիրութիւն առ կուռս ճանապարհորդէ. վասն զի առ մոլորութիւն արծաթոյն՝ զոչ աստուածս[10] աստուած անուանեն[11]. զի որք ունին զնա՝ ի թմբրութիւն արկանէ զնոսա. վասն արծաթոյն[12] կորուսի ես զորդիսն իմ, եթէ ոչ ապաշխարութիւն մարմնոյ իմոյ և աղօթք հօր իմոյ Յակոբայ ապրեցուցանէին՝[13] անորդի ունէի մեռանել:

1. Ա. յաւելս տուողիս յօրհնութեանն. Բ. յաւելուա տա հօրն տուողիս յօրհնութեանն:
2. Գ. վասն:
3. Բ. գիտեմ զի յինէն հաստատեսցի օրհնութիւնն:
4. Ա և Բ. որքան չարիս գործիցէք ի կատարածի ժամանակին:
5. Ա և Բ. զձեզ ի խառնակութենէ և յարբեցութենէ և յարծաթ...
6. Ա. Յերամ:
7. Ա Բ և Գ. առ:
8. Ա և Բ. մերձաւորի իւրոյ:
9. Ա. բարեպաշտութեան ընդդէմ հ[illegible]:
10. Բ. զչ[illegible]թեան:
11. Բ. են զի տուողիս անուանեն նոցա:
12. Բ. վասն արծաթոյն թերասաւի թագ իմոյ կորուսի:
13. Բ. ոչ են ազգեաւ և անօրէն են կորստեաւ:

Այլ Աստուած հարցն իմոց [1] գթած է և ողորմած, գի-տաց եթէ անգիտութեամբ արարի, վասն զի [2] զայ-թակղեցոյց զիս իշխանն մոլորութեան և տգիտացայ որպէս զմարդ, և իբրև զմարմին մեղօք թաթաւեցայ։

Արդ ծաներուք, որդեակք իմ, զի երկու ոգի պարապեն մարդոյ ի ճշմարտութիւն և ի մոլորութիւն, և ի մէջ նո-ցա իմաստութիւն՝ [3] զոր կան և ունին միտք. վասն զի զապիրատութիւն և զճշմարտութիւն գրեալ է ի լանջս մարդոյն [4]. և զիւրաքանչիւր ոք ի մարդկանէ ճանաչէ Տէր, և ոչ է ժամանակ յորում կարասցէ մարդ թա-քուցանել [5]. վասն զի ի լանջս նորա գրեալ է հոգին ճշմարտութեան, և վկայէ վասն ամենայնի և չարա-խօսէ վասն ամենեցունց, և իբրև հրով այրեցեալ լինի մեղաւորն, և ոչ կարէ համբառնալ ի վեր զդէմս իւր։

Եւ արդ [6], որդեակք իմ, սիրեցէք զՂեւի, զի կեցջիք յաւիտեան և մի՛ սատակեսջիք, վասն զի ընտրեաց զնա Տէր առաւել քան զձեզ. մերձեցարուք ի նա և ճաշակեցէք ի սեղանոյ նորա, և ի վայելչութենէ որդւոցն Իսրայելի. և դու լիցիս [7] թագաւոր ի մէջ [8] Յակոբայ և լիջիր [9] իբրև զծով. զոր օրինակ ի նա արդարք և մեղաւորք մկրտին, այսպէս և ի քեզ ա-մենայն ազգ Իսրայելի վտանգեսցի և յանցանիցէ. վասն զի որք թագաւորեսցեն ի քեզ՝ եղիցին իբրև զկէտս և կլանիցեն զԻսրայէլ իբրև զձկունս. զուստերս և զդստերս [10] ի ծառայութիւն արկցեն, և զտունս և զա-գարակս, և զհօտս և զկարասիս յափշտակեսցեն, և զբազմաց մարմինս անկեղաց [11] և ագռաւուց տացեն կերակուրս։ Եւ եղիցին մարգարէք մրրկեալ և ա-

1. Ա և Բ. ծրոց։
2. Բ. զի։
3. Բ. նոցա երկուցն է իմաստու-թիւն. Ա և Գ. նոցա է իմաս-տութիւն։
4. Բ. մարդոյն զառաջին։
5. Բ. յաւելու զխորհս իւր։
6. Ա. Բ և Գ. այժմ։
7. Ա և Բ. եղիջիր։
8. Բ. ի մէջ Իսրայէլի Յակոբայ։
9. Ա. Բ և Գ. լինիջիր։
10. Ա և Բ. զպատերս խորհրդոց։
11. Ա և Բ. անկելոց։

նոյն արդարքն հալածեցին. և արկցէ[1] Տէր ի րայ նոցա բաժանումն, և[2] եղիցին պատերազմունք ոդ Իսրայելի և ընդ այլազգիսն. և վախճանեսցի ագաւորութիւն նոցա, մինչև եկեսցէ փրկութիւն[3] րայելի. և ապա բնակեսցէ Յակոբ[4] ի խաղաղութեան, և նա պահեսցէ զզօրութիւն թագաւորութեան ոյ մինչև յաւիտեան: Վասն զի երդմամբ երդուած Տէր ոչ պակասեցուցանել զթագաւորութիւն ի ւակէ իմմէ մինչև յաւիտեան:

Բազում տրտմութիւն է ինձ, որդեակք իմ, վասն խութեանց և կախարդութեանց և կռապաշտութեանց զոր գործիցէք, և զորովայնակոչաց զհետ թալ և զհարցկաց և զդիւթաց[5] մոլորութեանց: ստերս ձեր երգիչս և հրապարականիստս առնիք[6], և խառնակեսցին[7] ընդ պղծութիւնս հեթանոսաց. վասն[8] որոյ ածիցէ Տէր ի վերայ սով և անութիւն[9], մահ և սուր, և պաշարումն ի թշնաւաց և նախատինս[10] ի սիրելեաց. կորուստ և խիթս[11] ղայոց, և բաժանումն[12] կենակցաց, և պակասումն ւլից, և օտարութիւն անձամբ ի ծառայութիւն հեթանոսաց. և արասցեն ի ձէնջ ներքինիս ի ծառայութիւն կանանց իւրեանց:

Եւ յորժամ դառնայցէք առ Տէր և կատարեալ սրտիւ պաշխարիցէք, և գնայցէք յամենայն պատուիրանս րա, այց արասցէ ձեզ ողորմութեամբ. և հանցէ ի րութենէ, և ապա յետ այսորիկ ծագեսցէ աստղն խաղութեան և գնասցէ ի մէջ մարդկան հանդարտու-

Ա. Բ և Գ. ածցէ:
Ա և Բ. և պատերազմունս.. [illegible]. Գ. և պատերազմունս:
Բ. [illegible]:
Բ. Բնակեսցէ Իսրայէլն նոր:
Ա. Բ և Գ. զդէւաց:
Ա և Բ. առնէք:
Ա. Բ և Գ. խառնակեսցէ:
8. Ա և Բ. յաղագս որոյ:
9. Ա և Բ. [illegible]:
10. Ա. Բ և Գ. սիրելեաց ի նախատինս:
11. Բ. հիւծս. Գ. խիթս:
12. Ա. Բ և Գ. և ի կենակցաց բաժանումն, պակասումն ի [illegible]:

թեամբ[1] և արդարութեամբ. բացցին նմա երկինք և հեղցին օրհնութիւնք Հօրն սրբոյ ի վերայ նորա[2], և նա հեղցէ ի վերայ մարդկան[3] զհոգին շնորհաց, և եղիջիք նմա յորդեգրութիւն ճշմարտութեան, և գնասջիք ի սահմանս նորա յառաջինս և յերկրորդս: Յայնժամ ելցէ շառաւիղ[4] յինէն՝ և ծաղկեսցի[5] ի գաւազան թագաւորութեան իմոյ, և յարմատոյ ձերմէ[6] եղիցի հիմնաւորութիւն. և ի նմանէ ելցէ[7] գաւազան արդարութեան հեթանոսաց, դատել և ապրեցուցանել զամենեսեան՝[8] որ կարդան առ Տէր: Եւ յետ այսորիկ եղիցի Յակոբ կենդանի և Իսրայէլ յարիցէ, և ես և եղբարք իմ իշխանք[9] գաւազանաց մերոց եղիցուք: Առաջին Ղեւի, երկրորդն ես, երրորդն Յովսէփ, չորրորդն Բենիամին, հինգերորդն Շմաւոն, վեցերորդն Իսաքար. և այսպէս ամենեքեան: Եւ Տէր օրհնեաց զՂեւի, և հրեշտակ երեսաց նորա զիս, և հրեշտակ փառաց նորա[10] զՇմաւոն, երկինք՝ զՌուբէն, երկիր՝ զԻսաքար, ծով՝ զԶաբողոն, լերինք՝ զՅովսէփ, տաղաւարք՝ զԲենիամին, լուսաւորք՝ զԴան, փափկութիւն՝ զՆեփթաղիմ, զօրութիւն[11] և հաստատութիւն՝ զԳադ, ձիթենիք՝ զԱսեր: Եւ եղիցին ի ժողովուրդս Տեառն մի սիրտ[12] և մի լեզու, և ոչ լիցի[13] ի ձեզ ոգի մոլորութեան. զի աւրկեալ եղիցին[14] պիղծ ոգիքն ի դատաստան յաւիտենից. և որք ամբարտաւանութեամբ[15] վախճանեցան՝ յարիցեն, և որք վասն Տեառն՝ մեռան զարթիցեն, և եղջե-

1. Բ և Գ. խաղաղութեամբ, և հանդարտութեամբ։
2. Բ. յաւելու որ է Քրիստոս։
3. Ա. Բ և Գ. վրիպակաւ գնեն մեր։
4. Բ և Գ. շարաւիղ։
5. Ա և Բ. ծաղկեսցի գաւազան. Գ. ծաղկեսցէ գաւազան։
6. Բ. յետոյ է մարգարէին եղիցի հիմնաւորութիւն.։
7. Բ. ելցէ աստղն՝ գաւազան։
8. Ա և Բ. անյատկաբար զնե ղանձնայն...
9. Ա. Բ և Գ. իշխան։
10. Պակասէ յայլ օրինակս նորա։
11. Ա. Բ և Գ. զօրութիւն և հաստատութիւն։
12. Պակասէ յայլ օրինակս սիրտ։
13. Ա և Բ. եղիցի։
14. Բ. լիցին պիղծ ոգիք ...
15. Ա և Բ. տրտմութեամբ։

ուքն[1] Յակոբայ ընթացին, և ամենայն ժողովուրդք[2] առաւորեսցեն զՏէր՝ յաւիտեան։ Արդ պահեցէք, րդեակք իմ, զօրէնս[3] Տեառն, զի յոյս է ամենեյուն՝ որ թէ ուղիղ գնան ընդ նա։ Եւ[4] արդ ես հաւիւր ինն և տասն ամաց վախճանիմ այսօր առաջի աաց ձերոց, մի՛ ոք զիս թաղեսցէ և կամ զորովայն իմ պատառեսցէ. այլ հանէք զիս ընդ ձեզ ի Քեբրոն։ Եւ արարին այնպէս զոր օրինակ[5] և հրամայեաց նոցա. և ննջեաց Յուդա ընդ հարս իւր, ի փառս[6] Աստուծոյ։

1. Ա և Բ. յաւելուն և երբինչն Իսրայելի խայտասցին։
2. Բ. ժողովրդոցն Իսրայելի օրհնեսցեն զՏէր…
3. Ա և Բ. զ[illegible] օրէնս։
4. Ա և Գ. և ամաց հարիւր… Բ. և եօ ամաց հարիւր։
5. Ա. Բ և Գ. որդիքն։
6. Յայլ օրինակս պակասէ ի փառս Աստուծոյ։



# ԿՏԱԿ ԻՍԱՔԱՐԱՅ[1]

Հրաման պատասխանաց[2] բանիցն իսաքարայ. յորժամ հանդերձեալ էր վախճանել զկեանս իւր կոչեաց զորդիսն իւր և ասէ. Լուարուք[3] իսաքարայ[4] հօր ձերոյ և ունկն դիք բանից սիրեցելոյ ի Տեառնէ։ Ես ծնեալ եղէ ի վարձուց մանրագորացն վասն զի Ռուբէն եբեր մանրագորս ի յանդէ. և յառաջագոյն դիպեալ Հռաքելայ՝[5] եհան ի ծոցէն՝ և սկսաւ լալ Ռուբէն. և լուեալ զձայն նորա Լիա մայրն[6] ասաց ցՀռաքէլ. Տուր զմանրագորսդ. և էին մանրագորքն խնձորք անուշահոտք, և լինի[7] յանտառս յերկրին Արամայ։ Եւ ասէ Հռաքէլ. Ոչ տաց զսոսա քեզ.

1. Բն. Կտակ իսաքարայ որդւոյն Յակոբայ՝ զոր խօսեցաւ ընդ որդւոցն իւր. Ա և Բ. Կտակ իսաքարայ. Գ. Կտակ իսաքարայ որդւոյ Յակոբայ։
2. Ա. պատասխանոյ բանիցն իսաքարայ, և ասէ լուարու... Բ. պատասխանոյ բանիցն իսաքարայ. և ասէ իսաքար ցորդիս իւր ի ժամ մահուան իւրոյ. Գ. պատասխանեաց բանից իսաքարայ որ ասաց, լուարուք...
3. Բ. յաւելու որդեակք։
4. Գ. իսաքարայ։
5. Ա և Բ. Հաւանեալ եղեան ի նմանէ. (Բ. յաւելու մանրագորն) և լուեալ. Գ. Հաւանեալ եղեն և ախտա...
6. Ա. Բ և Գ. մայր իւր...
7. Բ. լինի նա։

ւցէն ինձ փոխանակ որդւոյ [1] ։ Եւ էին խնձորքն
։ Եւ ասէ Լիա ․ Ո՛չ է բաւական քեզ զի առեր
կուսութեան իմոյ, մի՞ թէ և զմանրագորսդ
[3] ։ Եւ նա ասէ ․ Ահա եղիցի քեզ Յակոբ ի գի-
յայսմիկ փոխանակ մանրագորացդ ։ Եւ ասէ ․
ա ․ Մի՛ պարծիր և մի՛ փառաւորեր [4], զի իմ է
, և ես իմ կին երիտասարդութեան նորա ։ Իսկ
լ ասէ ․ Այլ և զիս յառաջագոյն քան զքեզ ա-
ցոյց և ծառայեաց [5] վասն իմ ամս չորեքտա-
րդ զի՞նչ արարի [6] քեզ զի բազմացան նենգու-
քո ի վերայ երկրի ․ ապա թէ ճշմարտութեամբ
իր ոչ եւս տեսանէիր զերեսն Յակոբայ ․ վասն
նորա ոչ էիր՝ այլ նենգութեամբ փոխանակ
մ տուար [7] նմա ․ վասն զի մոլորեցոյց զիս
իմ՝ և ոչ եթող զիս անդ [8] ․ եթէ ոչ լինէր այս
։ Եւ յաւել Հռաքէլ խօսել և ասէ [9] ․ Մի ի
գործոյս առից, և ընդ միոյ ի վարձու տաց
գիշերիս ։

նմուտ Յակոբ առ Լիա [10] և ծնաւ զիս նորա, և
արձուցն կոչեցայ [11] Իսաքար ։ Յայնժամ երեւե-
Յակոբայ թէ վասն այնորիկ ծնաւ Հռաքէլ

Բ․ որդւոյ ։ [illegible]

9․ [illegible]

10․ [illegible]

11․ [illegible]

12․ [illegible]

երկուս որդիս՝ զի արհամարհեաց զանկողինս ա
ընտրեաց զժուժկալութիւն. և եթէ ոչ Լիա մայ
փոխանակ անկողնոյն տուեալ էր զերկուսին խնձ
ութ որդիս ունէր ծնանել [1]. վասն այսորիկ վեց
ծնաւ և զերկուսն ևս Հռաքէլ: Վասն զի մանրագո
այց արար [2] նմա Տէր, զի տեսեալ եթէ վասն որդւո
մէր ննջել ընդ առն իւրոյ և ոչ վասն ցանկութեան
ի վաղիւ անդր ի վեր ելեալ խնդրեաց զՅակոբ՝ զի
ցէ զմիս ևս մանրագորն. և վասն զի ցանկացե
նոցա ոչ կերաւ՝ այլ եդ ի տուն Տեառն, և մատու
քահանայապետին բարձրելոյ [4] որ էր ի ժաման
յայնմիկ:

Այլ յորժամ եղէ կատարեալ, որդեակք իմ, զ
ուղիղ [5] սրտիւ լեալ երկրագործ հօր իմոյ Յակ
և եղբարց իմոց, [6] և բերէի յանդից զամենայն
ըստ ժամանակին, և ոչ էի քննող ի գործս իմ՝
երեսնամեայ էի ես յորժամ առի կին, վասն զի
խատութիւնն ճարակէր զզօրութիւն իմ, և ոչ
նեւին զմտաւ ածէի վասն հարսանեաց յամսն յ
աւկ [8]. և ուրախ էր հայր իմ վասն պարզմտութ
իմոյ, վասն զի զոր աշխատէի և ոչ բաժանէի՝
ղագս [9] այսորիկ ստէպ ստէպ օրհնէր զիս հայրն [1]
Եւ այժմ, որդեակք իմ, լուարուք ինձ և զն

1. Բ. ծնեալ. յաղագս վեց որդիս ծնաւ, որ էր զենձորան և ոչ զանկողնոյ առաւտութիւնն, և զերկուսն որդիսն Հռաքէլ ծնաւ:
2. Բ. արար Հռաքէլի Տէր… Հռաքէլ ընդ Յակոբայ և:
3. Բ. Եւ Լիա մայր իմ ի վաղիւն ի վեր ելեալ խնդրեաց զՅակոբ, վասն զի ցանկութիւն էր ի նմա և ոչ վասն որդեծնութեան: Եւ … Հռաքէլ … ևս մանրագորն, վասն զի ցանկայր որդւոց. ոչ կերաւ Հռաքէլ զենձորան այլ եդ զնոսա Տեառն Աստուծոյ:
4. Բ. Աստուծոյ բարձրելւ էր քահանայապետ ի ժամն յայնմիկ, և օրհնեաց Ղեւի յերկուս որդիս:
5. Ա. Բ և Գ. առողջութեա-մբ:
6. Աստի մինչև ի վերջ պա յԲ. օրինակին:
7. Ա և Գ. յաղագս այսորի
8. յԱ. պակասէ յամսն յա
9. Գ. վասն այսորիկ:
10. յԱ. պակասէ Հայրն

ջմտութեամբ, վասն զի տեսի ես ի նմա զհաճոյսն տառն[1], և ոգի մոլորութեան ոչ հանդարտէր ընդ-մ նորա. վասն որոյ ոչ գիտէր ընտրել զգեղեց-ւթիւն[2] կանանց, և ոչ էր նախանձ ի խորհուրդս ", և ոչ զմտաւ ածէր զագահութիւն ոսկւոյ[3]. վասն գնացի պարզմտութեամբ և զամենայն ինչ տեսա-ի ուղղութեամբ. ոչ երբէք արկեալ[4] իմ զակն ի լորութիւն՝ զի մի՛ տեսից թիւրութեամբ և արկցէ-ա ի հոգս իւր:

Արդ պահեցէք զօրէնս Տեառն և ստացարուք պարզ-ութիւն. տուք զթիկունս ձեր յերկրագործութիւն աշխատեցէք[5] ի վաստակս երկրի. զի ի պտղոյ խատութեան[6] ձերոյ օրհնեսցի Տէր, վասն զի ոչ տուեալ ձեզ այլ բաժին[7]. վասն որոյ և հայրն -ր Յակոբ յօրհնութեանն իւրում[8] նշանակեաց Եւեայ զառաջնորդութիւն, և Յուդա փառաւորե-ու յորդւոյն Յակոբայ. նոցա լուիջիք[9], և ի միամտու-ենէ հօր ձերոյ մի՛ գայթագղիք. և զի Գադայ տուեալ [10] կորուսանել զփորձութիւնսն որ յայտնելոց է ի լրայ Իսրայելի: Գիտեմ, որդեակք իմ, զի յետին ժամանակին[11] պռնկեսցին որդիքն ձեր ի միամտու-ենէ թողեալ զմշակութիւն. զհետ երթեալ խորհրդոց -քեանց, և ցրուեսցին ընդ հեթանոսս, և թշնամեաց -րեանց ծառայեսցեն: Արդ, և դուք ասացէք զայս -դւոց ձերոց, զի յորժամ յանցանիցեն վաղվաղակի -րձցին առ Տէր, զի ողորմած է և պահէ[12] զնոսա, -կէ և դարձուցանէ զնոսա յերկիր իւրեանց: Հա--ւր քսան և երկու ամաց եմ ես, և ոչ գիտացի յիս

[1] Գ. Աստուծոյ. Ա և Գ. և ոգին:
[2] Գ. զգեղ:
[3] յԱ. պակասէ ոսկւոյ:
[4] Ա. արկեալ էր իմ. իսկ Բ. ար-կեալ:
[5] Ա. մշակեցէք:
[6] Ա. շահեկանաւորութեանց ձերոց:
[7] Ա. օրհնակն զնէ յաղագս որոյ:
8. Ա և Գ. ծերում:
9. Բն. և Բ. լուծէք. Գ. լիզէք:
10. Ա. եր:
11. Ա. ժամանակն:
12. յԱ և յԳ. պակասէ պահէ զնոսա:

մեղս և ոչ պոռնկեցայ, և ի զբօսանս իմ խաբէու
թեան գինի ոչ արբի, և նենգութիւն ոչ եմուտ
բերան իմ, և ոչ ատեցի ընկերի իմում. արդարութի
արարի յիրաւունս[1] իմ յամենայնի և սրբութեա
գնացի[2]: Զայս ամենայն խօսեցաւ Իսաքար ընդ ո
դիսն իւր և պատուիրեաց նոցա զի հանցեն զոսկե
նորա ի Քեբրոն և անդ թաղեսցեն յայրին Մաքփ
լայի[3]: Եւ պարզեալ զոտս իւր ննջեաց յերկր
Հռակողմայ[4]. ողջունեաց[5] զամենայն անդամս իւր,
զօրութեամբն ննջեաց քուն յաւիտենական, ի փա
Աստուծոյ[6]:

1. Ա և Գ. յամենայն իրաւունս
2. յԱ և յԳ. պակասէ մինչև և պատուիրեաց...
3. Ա. Մաքփելայի:
4. Գ. Հռաչողողմայ:
5. Ա. ողջունելով. Գ. ողջունե
6. Ի ձեռս Աստուծոյ պակ
յայլ օրինակս:



# ԿՏԱԿ ԶԱԲՈՒՂՈՆԻ[1]

—•••—

Հրաման կտակի պատասխանաց[2] բանիցն Զաբուղոնի՝ զոր ետ որդւոց իւրոց ի հարիւր ի քսան և ի չորրորդ ամի կենաց իւրոց: Յետ երկուց ամաց մահուանն Յովսեփայ՝ կոչեաց[3] զորդիսն իւր և ասէ ցնոսա. Լուարուք ինձ որդիք Զաբուղոնի և հայեցարուք ի բանս հօր ձերում[4]: Ես եմ Զաբուղոն, տուրք բարեաց ծննդոց իմոց[5], վասն զի ի ծնանելն իմում[6] աճեաց հայրն իմ յոյժ հօտիւք և անդէօք և[7] ազգի ազգի ժառանգութեամբ: Եւ այս[8] յուշ լիցի ձեզ, որդեակք իմ, զի ոչ ծանեայ ես եթէ յանցեայ յաւուրս իմ, և ոչ յիշեմ կարեմ թէ երբեք[9] արարի անօրէնութիւն, բաց յանգիտութենէ[10] զոր արարի

1. Բն. Կտակ Զաբուղոնի որդւոյն Յակոբայ իսրայէլի. Ա և Բ. Կտակ Զաբուղոնի որդւոյ իսրայէլի որդւոյ Իսահակայ. Գ. Կտակ Զաբուղոնի:
2. Ա և Գ. պատասխանեաց:
3. յԱ և յԳ. պակասէ կոչեաց զորդիսն իւր:
4. Ա և Գ. ձերոյ:
5. Մինչև ասա պակասէ յԲ. օրինակին:
6. Ա. Բ և Գ. իմ:
7. Ա. Բ և Գ. յորժամ (Գ. յոյժ) ազգի ազգի անդէր ժառանգութեանն:
8. Յայլ օրինակս պակասին բանքս. Եւ այս յուշ լիցի ձեզ, որդեակք իմ, զի:
9. Յայլ օրինակս պակասէ երբեք:
10. Ա. Բ և Գ. յանգիտութենէ զոր արարի. (Գ. գործեցի):

առ Յովսէփ, զի ծածկեցի ես ընդ եղբարս իմ զբա
և ոչ ասացի զկեալսն հօր իմոյ Յակոբայ. բա
լացի ես վասն Յովսեփայ աւուրս բազումս, վասն
երկնչէի ես յեղբարցն իմոց. և[2] յորժամ կամ
սպանանել զնա, բազում անգամ աղաղակէի[3] ի
նոցա զի մի արասցեն զանօրէնութիւնն զայն. և
Շմաւոն և Գադ յարձակեցան ի վերայ նորա
անկեալ Յովսէփ ի վերայ երեսաց իւրոց՝ և աս
լալով. Ողորմեցարուք ինձ, եղբարք իմ, և գթաց
յալիսն Յակոբայ հօրն մերում, և մի արկանէք զձ
ձեր յիս, զի ոչ[7] մեղայ ինչ ձեզ. սակայն եթէ մե
խրատելով խրատէք[8] և մի ինչ առնէք ինձ վ
վասն Յակոբայ հօր ձերում: Արդ մինչ դեռ ա
զբանս զայս, գթութիւն անկաւ ի սիրտ իմ և լա
իմ հարաւ յիս, և ամենայն կար զօրութեան աղ
իմոց սուզաւ յոգի իմ և լացի[9] ես ընդ նմա. և զ
հուրեալ էր սիրտ իմ, և ոչ հանդարտէի կալ[10]:
տեսեալ նորա զիս ի լալ ընդ նմա՝ և զնոսա յար
կեալ ի վերայ՝ զի սպանցեն զնա, փախեաւ զկն
իմ և աղաչէր զնոսա: Եւ ապա յարուցեալ Ռու
ասաց. Եղբարք իմ, մի սպանցուք զսա. այլ արկց
ի մի[12] ի Ջրհորոց ցամաքաց յայսցանէ՝ զոր փորե
հարքն մեր և ոչ գտին ջուր. զի վասն[13] այսորիկ
գել Տէր չլինել ջուր ի նոսա զի եղիցի փրկութ

1. Ա. Բ և Գ. և լացի (Գ. լայի):
2. Ա. Բ և Գ. բայց:
3. Ա և Բ. խածէի զկայեւ. Գ. զկա- յեի:
4. Ա. Բ և Գ. վասն զի:
5. Ա. Բ և Գ. լայր և ասեր:
6. Ա և Բ. գթացարուք:
7. Ա և Բ. զի ոչ ինչ մեղայ ձեզ:
8. Ա. Բ և Գ. խրատեցէք զիս (Գ. չունի զիս) և զձեռս ձեր մի ար- կանէք յիս վասն Յակոբայ հօր ձերում:
9. Ա և Բ. լացի:
10. Գ. կեալ:
11. Բ. ինձ ընդ յետոյ, և:
12. Բ. մի ի խորոցն ցամաքաց ... ցանէ, զոր փորեցին հարքն ... ուգտին ջուր, արկցուք զսա Գ. մի ի Ջրհորոց ցամաքաց... արկցուք զսա, զի:
13. Ա և Բ. յաղագս:

տմսեփայ։ Եւ արարին այնպէս՝ մինչեւ[1] վաճառե-
ալք զնա Իսմայելացւոցն։ Բայց[2] գնոցն ոչ հաւա-
արեցի ես, որդեակք իմ, այլ Շմաւոն և Գադ և այլ[3]
ղբարքն. և առեալ զայն գնէին ագանելիս[4] իւրեանց,
ասացեալ եթէ ոչ կերիցուք յայսմանէ, վասն զի գինք
րեան եղբօր մերոյ են[5], այլ կոխելով կոխեսցուք
սա վասն ասելոյ Նորա եթէ թագաւորեսցից ի վերայ
ոցա[6]։ Յաղագս այսորիկ և յօրէնս Նոցա ասաց, որ
չ կամեսցի յարուցանել զաւակ եղբօր իւրոյ[7], թը-
անիցեն[8] յերեսս կօշկի Նորա. վասն զի և եղբարք
որա ոչ կամեցան վասն կենաց եղբօր իւրեանց. և
էր բոկացոյց զնոսա ի կօշկացն զոր զգեցան ընդ-
էմ Նորա։ Զի ամենեքեան եկեալ յԵգիպտոս՝ ոչ
իայն երկիր պագին Նմա՝ այլ և յամօթ եղեն առաջի
գիպտացւոցն, վասն զի լու[9] եղեւ ընդ ամենայն
գիպտոս։

Եւ յորժամ արկին[10] զՅովսէփ ի գուբն, կամէին
աշակել, և Յուդա ոչ ուտէր ընդ Նոսա, այլ հայէր
ւ կասկածէր՝ զի մի գուցէ վազիցէ Գադ և Շմաւոն
ւ սպանցեն զնա. և տեսեալ զիս զի ոչ ուտէի՝ և ուշ
դեալ ինձ զի ոչ ճաշակեցի, և Յուդա զիս արար
պահապան Նմա[11] մինչեւ վաճառեցին զնա։ Եւ եղեւ
ա ի Ջրհորին զերիս տիւս և զերիս գիշերս, և այն-
պէս[12] վաճառեցաւ Յովսէփ. պատառեաց զհանդերձս

1. Ա և Բ. մինչ վաճառեցաւ Յովսէփ։
2. յԱ. պակասէ Բայց։
3. Ա և Բ. այլեւս վեց եղբարքն։
4. Բ. ագանելիս ոսկեաց իւրեանց և կանանց իւրեանց. Ա և Գ. ագանելիս իւրեանց և կանանց իւրեանց։
5. Ա և Բ. է։
6. Ա. Բ և Գ. չէր։
7. Բ. իւրեամ։
8. Ա և Բ. բոկանալ ի կօշկին և Բեռնել ի գետն նորան, յԳ. պակասէ։
9. Բ. լռելի եղև։
10. Ա. Բ և Գ. ընկեցին... վասն զի հայէր....
11. Յայլ օրինակս պակասէ Նմա։
12. Բ. եկեաց առանց վերակրոյ, մին- չև վաճառեցին զնա. և լռեալ Ռուբէն եթէ վաճառեցաւ, պատառեաց. Ա և Գ. վաճառեցաւ առանց վերակրոյ. և լռեալ Ռուբէն։

իւր և սգալով ասէր․ Զի՞արդ տեսից զերեսս Յակոբայ
հօր իմոյ․ և առեալ զարծաթն ընթացաւ զհետ վա-
ճառականացն, և ոչ[1] եգիտ զնոսա․ վասն զի թողեալ
էին նոքա զմեծ ճանապարհն որ էր ի կարճոյ՝ և ընդ
այլ[2] գնացեալ․ և կորեաւ Յովսէփ յաւուր յայնմիկ։
Եւ մատուցեալ Դան ասէ ցՌուբէն․ Մի լար և մի ող-
գար, վասն զի գտի պատճառս ասելոյ հօր մերոյ Յա-
կոբայ։ Զենցուք ուլ[3] մի և թաթաւեսցուք զհան-
դերձս[4] Յովսեփու և ասասցուք ցՅակոբ․ Ծանի
եթէ ա՞յս է պատմուճան որդւոյն քո Յովսեփայ։ Եւ ա
րարին այնպէս․ բայց զպատմուճանն ունէր Շմաւոն
ոչ կամէր տալ նոցա, վասն զի բարկացեալ էր[5] թէ
զի՞արդ եկաց Յովսէփ և ոչ սպանի զնա։ Եւ յարու
ցեալ մեր ի վերայ նորա ասացաք․ Եթէ ոչ տաս[6]
ասասցուք եթէ, դու միայն արարեր զչարիս ի մէջ
Իսրայելի․ և ապա տուեալ[7] և այնպէս[8] արարին
որպէս ասաց[9] նոցա Դան։

Եւ այժմ, որդեակք իմ[10], պահեցէք զպատուիրան
Տեառն, զոր[11] օրինակ և ես պահեցի, և շնորհս առ
յԱստուծոյ․ վասն զի ամենայն եղբարք իմ հիւան-
դացեալ[12], իսկ ես առանց հիւանդութեան անցուցի
զաւուրս իմ․ զի գիտէ Տէր զիւրաքանչիւր ումեք[13]
զյօժարութիւն սրտի․ ընկալարուք զողորմութիւն յա-
ղիս ձեր, որդեակք իմ, զի որքան եթէ արասցէ[14]

1․ Ա․ Բ և Գ․ ոչ զոք եգիտ։
2․ Բ․ այլ ճանապարհ երթեալ գնացեալ, և ոչ ճանաչէաց Ռուբէն յաւուր յայնմիկ։ Եւ Ա և Գ․ վրիպակաւ փոխանակ կորեաւն ունին կերաւ Յովսէփ։
3․ Ա և Գ․ քօշ,
4․ յԲ․ պակասէ երկու տող։
5․ Ա․ Բ և Գ․ յաւելուն յաղագս այսորիկ։
6․ Բ․ տաս պատմուճանդ․ չարէին զայն։
7․ Բ․ յաւելու զնա։
8․ Պակասէ յայլ օրինակս։
9․ Գ․ պատուիրեաց։
10․ Ա․ Բ և Գ․ յաւելուն պատուիրեմ ձեզ։
11․ Յայլ օրինակս պակասէ ա[illegible] մի։
12․ Ա և Գ․ եղբարց իմոց հիւանդացեալ․ Բ․ հիւանդացան։
13․ Բ և Գ․ ուրուք․ յԱ․ յԲ յԳ․ պակասէ սրտի։
14․ Բն․ առասցէ։

Մերձաւորին իւրոյ՝ այնպէս արասցէ նմա Տէր։ Վասն
այսորիկ, որդեակք իմ[1], որդիք եղբարցն իմոց հի-
ւանդանային և մեռանէին[2] վասն Յովսեփայ, և իմքդ
առողջ պահեցաք որպէս և գիտէքդ իսկ։

Եւ մինչ[3] էաք յերկրին Քանանացւոց ի ծովեզերին,
որսայի ես որս ձկանց՝ կերակուր[4] Յակոբայ հօր իմոյ,
բազմաց ի նոցանէ վատեալ[5] ես միայն առողջ մնացի.
զառաջին ես արարի նաւ և նաւեցի ի ծովու. վասն
զի Տէր ետ ինձ իմաստութիւն, և պնդեցի փայտ-
կնի[6] նորա, և պարզեցի կտաւս ի մէջ ուղղորդ փայ-
տից և ի մէջ նաւին. և նաւէի յեզեր[7] ծովին և
տանէի որս տան հօր իմոյ, մինչև եկաք յԵգիպտոս։
Զամս հինգ արարի[8] ձկնորսութիւն յամարայնի, և
ի ձմերայնի հովուէի զհօտն[9] ընդ եղբարս իմ։ Եւ յի-
ջանելն[10] մեր յԵգիպտոս ոչ յիշեաց Յովսէփ զչարն-
զոր արարին[11] նմա. յոր հայեցեալ որդիք իմ և դուք
սիրեսջիք զմիմեանս և մի ածէք զմտաւ և մի պա-
հէք զչարութիւն[12] իւրաքանչիւր ոք ընդ եղբօր իւ-
րում. վասն զի սա է[13] որ որոշէ զչարութիւն և ի
բաց ցրուէ, և զգոյացակցութիւն անյայտ առնէ։ Հա-
ւեցարուք, որդեակք իմ, ի ջուրս՝ զի յորժամ միաբա-
նութեամբ գնայ՝ զքարինս և զփայտս և զհողս և զաւազ
առ հասարակ բերէ, ապա եթէ ի բազումս[14] բաժա-
նեսցի, ծածկէ զնա երկիր և դիւրաւ արհամարհեսցի[15]
յամենեցունց. և դուք եթէ բաժանիք՝ լինիք այնպէս.
Զի զամենայն զոր ինչ արար Տէր, գլուխ մի շնոր-
հեաց. վասնզի ետ երկուս ուսս, երկուս ոտս և այլ ան-

1. յԱ և յԲ. պակասէ որդեակք իմ։
2. Ա և Բ. մեռանէին իսկ։
3. Ա. Բ և Գ. յորժամ։
4. Պակասէ յայլ օրինակս։
5. Բ. կորուսեալ [illegible]։
6. Բ. յետոյս նաւին։
7. Ա. Բ և Գ. ընդ ծովեզրն։
8. Ա և Գ. որսացի, և տանէի ձկնորսութիւն... Բ. որսայի և տանէի ձկնորս։
9. Յայլ օրինակս պակասէ հօտն։
10. Ա. Բ և Գ. յորժամ իջաք։
11. Ա և Բ. արարին նմա։
12. Ա և Բ. զչար։
13. յԱ և յԲ. չիք է։
14. Բ. բազում մասունս։
15. Ա և Բ. արհամարհէ։

դամս [1], և միոյ գլխոյ ետ ունկնդիր լինել։ Վասն զի ծանեայ ես ի գիրս հարցն իմոց, զի բաժանեսջիք ի մէջ Իսրայելի, և [2] թագաւորաց զհետ երթիջիք, և զամենայն պղծութիւնս գործիցէք, և գերեսցեն զձեզ թշնամիք ձեր. չարչարեսջիք ի մէջ հեթանոսաց ընդ ամենայն հիւանդութիւնս և նեղութիւնս [3]։ Եւ յետ այսորիկ յիշեսջիք զՏէր և մխիթարեսջիք [4] ապաշխարութեամբ, և դարձուսցէ զձեզ զի ողորմած է և գթած, և ոչ ածէ զմտաւ զչարիս մարդկան [5], վասն զի մարմին են և ոգի մոլորութեան մոլորեցուցանէ զնոսա յամենայն ի գործս նոցա. և յետ այսորիկ ծագեսցէ ինքնին [6] Տէր զլոյսն արդարութեան իւրոյ. [7] և դարձջիք յերկիր ձեր, և տեսջիք զՏէր յԵրուսաղէմ, և դարձեալ բարկացուցանէք զնա և արկանիջիք [8] ի հեթանոսս, մինչեւ ի ժամանակս կատարածի։

Եւ այժմ, որդեակք իմ, մի տրտմիք ընդ բանս իմ և մի խռովիք, զի պակասիմ ի կենաց. վասն զի յառնելոց եմ դարձեալ ի միջի ձերում, և ուրախ եղէ ի ցեղին իմում, որք [9] եթէ պահիցէք զօրէնս Տեառն։ Իսկ յամբարշտեալսն [10] ածցէ Տէր հուր յաւիտենական և կորուսցէ զնոսա յորդւոցն Իսրայելի։ Արդ ես ի հանգիստ իմ ընթանամ [11] բայց դուք եկերուք ի Տեառնէ։

Եւ զայս ասացեալ վախճանեցաւ. և եդին զնա որդիք նորա ի դիրս, և յետոյ [12] հանեալ թաղեցին զնա ի Քեբրոն ընդ հարս իւր, ի փոսս Աստուծոյ։

1. Բ. անդամք և զամենայն գլխոյն լաւ լինել. Ա. անդամս միոյ գլխոյ լաւ լինել։
2. Ա. Բ և Գ. և զհետոյ թագաւորաց։
3. ԱԳ. պակասէ նեղութիւնս։
4. Ա. Բ և Գ. ապաշխարեսջիք և դարձջիք։
5. Ա. Բ և Գ. որդւոց մարդկան։
6. Ա. Բ և Գ. ինքն։
7. Ցայս չիք իւրոյ։
8. Բ. արկանիջիք երկիր... ի ժամանակ կատարածի։
9. Ա և Բ. որ են։
10. Բ. յամբարշտեն։
11. Ա և Բ. ընթանամ որդեակ հարքն իմ, բայց դուք երկնչիջիք ի Տեառնէ. Գ. երկնչիցիք։
12. Ա. Բ և Գ. և յետ այսորիկ հանեալ (Գ. հանին) զնա ի Քեբրոնի թաղեցին զնա ընդ հարս իւր։

# ԿՏԱԿ ԴԱՆԱՑ[1]



Հրաման պատասխանոյ[2] Դանայ որդւոյն Յակոբայ, զոր ասաց որդւոց իւրոց և դստերացն, ի կատարածի աւուրցն այնոցիկ . ի հարիւր ի քսան ի և հինգ ամաց[3] կենաց իւրոց կոչեցեալ զորդիսն իւր, և ասէ ցնոսա . Լուարուք որդիք[4] Դանայ բանից իմոց, և հայեցարուք ի բան բերանոյ իմոյ . ես փորձեցի ի սրտի իմում և ծանեայ[5] յամենայն ի կեանս իմ, զի բարի է առաջի Տեառն ճշմարտութիւն[6] և հաճոյ հանդերձ արդարութեամբ, և չար է ստութիւն և սրտմտութիւն, զամենայն չարիս ուսուցանէ մարդկան : Արդ խոստովանիմ այսօր[7] առաջի ձեր, որդեակք իմ, զի հեշտութիւն եղեւ սրտի իմոյ[8] յաղագս[9]

1. Ամենայն օրք. Կտակ Դանայ՝ վասն ամբարտաւանութեան և ատելութեան. Բ. յաւելու և նախանձու:
2. Ա. Բ և Գ. պատասխանեաց Դանայ՝ զոր ասաց որդւոց իւրոց ի կատարածի աւուրցն այնոցիկ. (Ա. աւուրց իւրոց):
3. Ա. Բ և Գ. ամի:
4. Բ. որդեակք Դանայ հօր ձերոյ և նայեցարուք ի...
5. Ցայլս պակասէ ծանեայ:
6. Ա. Բ և Գ. և հաճոյ ճշմարտութիւն՝ հանդերձ արդարութեամբ:
7. Ա. Բ և Գ. առ ձեզ այսօր, որդեակք իմ:
8. Ա. Բ. և իմում:
9. Գ. վասն մահուան. Ա. յաղագս Յովսեփայ:

մանուանն Յովսեփայ առն արդարոյ և ճշմարտի. և
խնդացի [1] ընդ վաճառել նորա, վասն զի զնա առա-
ւել սիրէր հայրն իմ։ Եւ ոգի [2] ատելութեան և նախան-
ձու ասէր ցիս. եթէ դու որդի ես նորա [3]. և մի ոմն
ի չնչոց [4] բելիարայ գործակից լինէր ինձ և ասէր
ցիս. Ա՛ռ զսուրս զայս և սպան [5] զՅովսէփ, և սիրես-
ցէ զքեզ հայրն քո յորժամ սպանցես [6] զնա. այս
ոգի սրտմտութեան հաւանեցոյց զիս ծծել զարիւն
Յովսեփայ, զոր օրինակ ծծէ ինձ [7] զարիւն ուլու։ Այլ
Աստուած Յակոբայ հօր մերոյ [8], ոչ էարկ զնա ի ձեռս
իմ և ոչ գտի զնա միայն, և ոչ արար ինձ թոյլ
գործել զանօրէնութիւնն [9] զայն, զի մի՛ քակտեցի [10]
երկուս գաւազանս յԻսրայելէ։ Եւ այժմ, որդեակք
իմ, ես ահա մեռանիմ, և ճշմարտութեամբ ասեմ ձեզ,
եթէ ոչ պահիցէք [11] զձեզ յոգւոյն մոլորութենէ և ի սը-
տութենէ, և սիրեցէք զճշմարտութիւն և զերկայն-
մտութիւն՝ կորնչելոց էք. զի կուրութիւն գոյ [12] ի
սրտմտութիւն, որդեակք իմ, և ոչ ոք է որ ճշմարտու-
թեամբ տեսանէ զերեսս, թէպէտ հայր կամ մայր
իցէ, զեղբայր ոչ գիտէ և մարգարէի Տեառն ոչ լսէ,
և զարդարսն ոչ տեսանէ. վասն զի փակէ չուրջանակի
ոգին մոլորութեան ի թակարդս չուայտութեան և
կուրացուցանէ զբնական աչս նորա, և ի ձեռն ստու-
թեան խաւարեցուցանէ զմիտսն, և զիւր տեսարանն
տայ նմա. և ապա փակէ աչօք իւրովք և պաշարէ
ատելութեամբ սրտին, և տայ նմա միտս [13] հակառա-
կորդս ընդդիմակաց նզբօր իւրում։

1. Ա. Բ և Գ. եւ խնդացեալ էի վասն վաճառման նորա. վասն զի առատել (Բ. յաւելու քան զիս) սիրէր զնա հայրն իմ. (Ա. ձեր)։
2. Ա. Բ և Գ. վասն զի (Գ. զի) ոգի նախանձու և ատելութեան։
3. Բ. Յակոբայ։
4. Ա և Բ. չնչոյն։
5. Ա և Գ. սպանցես։
6. Ա և Բ. սպանանիցես։
7. Բ և Գ. ինձ։
8. Ա. Բ. և Գ. մերում։
9. Ա. Բ և Գ. զանօրէնութիւնս զայս
10. Բ և Գ. քակտեցի։
11. Ա. Բ և Գ. պահէք։
12. Ա. Բ և Գ. կայ ի սրտմտութեան։
13. Գ. միտս հակառակորդս ընդդիմակացս։

Եւ նախանձոտն[1] չար է սրտմտութեամբ, որդեակք իմ. վասն զի և նորին հոգւոյն[2] ինքն լինի հոգի, և մարմին իւր առնէ սրտմտողի, և հոգւոյն[3] տիրանայ մարմնոյն տայ զիւր զանօրէնութիւն[4]։ Եւ յորժամ ինչ հոգին[5] արդարացուցանէ զգործեցեալն, զի ոչ տեսանէ, վասն[6] որոյ սրտմտողն է եթէ իցէ զօրաւոր[7] երեքկին զզօրութիւնն ի սրտմտութեան ունի. զմինն օգնականութեամբ գործակցաւն, և զերկրորդն վասն մեծութեան հաւատացուցանելոյ և յաղթելոյ անիրաւութեան. իսկ զերրորդն բնական մարմնոյ ունելոյ և նովաւ գործել զչարիս. ապա եթէ տկար իցէ սրտմտողն՝ կրկնապատիկ ունի զօրութիւն. և եթէ ի բնութենէ լինին[8] նմա օգնական յամենայն ժամ յանօրէնութիւն սրտմտութեան։ Արդ այս ոգիս զամենայն ժամ հանդերձ սրտմտութեամբ լինիցին գործք նորա։

Արդ ծաներուք զզօրութիւն սրտմտութեան՝ զի ընդու-նայն է. վասն զի յառաջագոյն բանիւք զկծեցուցանէ, ապա գործովքն զօրացուցանէ զբարկացողն, և փոքր ուժիւք յուզարկէ զխորհուրդս նորա, և այսպէս արթուցանէ սրտմտութեամբ մեծաւ զհոգի նորա։

Արդ յորժամ խօսիցի ոք ընդ ձեզ, մի շարժեսցին կիրք ձեր ի սրտմտութիւն, և եթէ գովեսցէ ոք զձեզ բարբս՝ մի համբառնայցէք ի բարձունս, և մի ան-անիցէք[9] ի վայելչութիւնս, և մի յամբոխս. վասն ի վայելչութիւն նախ ուրախացուցանէ զլսելիս և ա-լս[10] սրէ զմիտս, և իմացուցանէ զխորհուրդս բարկա-

1. Ա. և նախանձ է որ փոխէ զսրտմտութիւն. Բ. և նախանձ փոխէ զսրտմտութիւն։
2. Բ. հոգւոյ։
3. Ա. Բ և Գ. հոգւոյն։
4. Բ և Գ. զանօրէնութիւնն։
5. ԺԲ. պակասէ հոգին։
6. Ա. Բ և Գ. յաղագս այսորիկ որ սրտմտողն։
7. Ա և Բ. զօրութիւն է սրտմը-տութեան ձն (Ա. զձն). Գ. զօ-րաւոր երեքին զօրութիւն է սրտմտութեանն։
8. Ա. Բ և Գ. լինի օգնական։
9. Բ. անգանիցէք։
10. ԺԱ և ԺԲ. պակասին ասա-որէ զմիտս։

յուցանողին. և սրտմտեալն կարծէ թէ յիրաւի բա
կացաւ [1]։ Եւ թէ ի կորուստ և ի տուգանս անկան
ցիք որդեակք, վասն զի ոգին մոլորութեան ցանկ
ցաւ գործել զայն. և կատարեալ զկորուստն,
տրտմեսցի վասն խնդրոյ կորստեանն։ Եթէ մնաս
ջիք կամաւ կամ ակամայ և խռովեսջիք, վասն
ի սրտմտութենէ զարթնու սրտմտութիւն. և է երկ
մի չար սրտմտութիւնն՝ հանդերձ ստութեամբ, և
նական լինին իրերաց՝ զի յուղարկեսցեն զխորհուր
և յորժամ յուղարկեսցեն հոգիքն, ստէպ ստէպ որ
չի ի նմանէ Տէր՝ և տիրէ նմա բելիար։

Արդ պահեցէք զձեզ, որդեակք իմ, ի պատուիրա
Տեառն, և յօրինաց նորա մի խոտորիք. հեռացար
ի ստութենէ և ատեցէք զստութիւն [2] զի փախ
ցէ ի ձէնջ բելիար և Տէր բնակեսցէ ի ձեզ։ Ճշմա
տութիւն խօսեցարուք իւրաքանչիւր ոք ընդ ընկեր
իւրում, և մի [3] անկանիք ի չարայուշութիւնս, այլ
ղիջիք [4] յամենայն ժամ ի խաղաղութեան, ունել
զԱստուած խաղաղարար, և հանդարտեսցէ ի մի
ձերում պատերազմ. սիրեցէք զՏէր յամենայն ի կեան
ձեր և զմիմեանս սրբով սրտիւ. գիտեմ զի յետ
ժամանակս հեռանայցէք դուք ի Տեառնէ և ընդդէ
յառնէք Ղեւեայ և ընդ Յուդայի հակառակեսջիք,
ոչ կարիցէք կալ ընդդէմ նորա [5], վասն զի հրեշտա
Տեառն առաջնորդեսցէ նմա [6] և նովաւ հաստատես
Իսրայէլ. և մերժելով ի Տեառնէ [7] գնայցէք յօժ
րութեամբ, և գործելով զպղծութիւն ընդ [8] հեթ
նոսաց, պոռնկելով ընդ կանայս անօրինաց, և ամ

1. Աստի մինչև Արդ պահեցէք. պակասէ յԱ և յԲ։
2. Ա. զնենգաւորութիւն։
3. Ա. Բ և Գ. և ոչ անկանիք ի չարայուշութիւնս և ի խռովութիւնս։
4. Ա. եղիջիք։
5. Բ. նոցա։
6. Ա և Բ. նոցա վասն զի. Գ. վասն զի. նոքօք հաստատ
7. Բ. ի նմանէ։
8. Ա և Բ. պոռնկելով ընդ հեթ նոսս ընդ. Գ. զպղծելով ըն ծութիւն ընդ հեթանոսս։

այն չարութիւն անզգամեալ [1] միւս ոգոյն պոռնկու-
եան և մոլորութեան. վասն զի կարդացի ես ի
իրս Ենովքայ արդարոյ, զի իշխան ձեր սատանայ
դիցի, և [2] ամենայն ոգի պոռնկութեան և ամբար-
տաւանութեան Ղեւեայ լուիցեն, և դարանակալ եղի-
ն [3] որդւոյն Ղեւեայ և տացեն նոցա մեղանչել
առաջի Տեառն. և որդիքն իմ մերձենան յորդիսն
Ղեւեայ և մեղանչակից քահանայից [4] յամենայնի. և
դիքն Յուդայի լիցին յագահութեան յափշտակելով
յլոց իբրև զառեւծ. վասն [5] այնորիկ երթայցեք ընդ
սա ի գերութիւն, և անդ առնուցուք [6] ընդ նոսա
երս, յԵգիպտացւոցն և զամենայն չարութիւնս հե-
անոսաց. և ապա դարձջիք առ Տէր և ողորմեսցի
եզ, և ածցէ զձեզ ի սրբութիւն իւր և տացէ ձեզ
աղաղութիւն [7], և ծագեսցէ ձեզ [8] փրկութիւն ի տա-
էն Յուդայ և ի ցեղէն Ղեւեայ. և տացէ խաղաղու-
իւն յաւիտեան Իսրայելի [9]. և տացէ պատերազմ
ընդ բելիարայ, և զհոգիս սրբոց առ ինքն կոչեսցէ,
և դարձուսցէ զսիրտս անհաւատից առ Տէր, և վրէժ-
խնդրութիւն յաղթութեան տացէ հարց իւրոց և
գերութիւն առցէ ի բելիարայ [10]: Եւ տացէ խա-
ղաղութիւն յաւիտենական որք կարդան [11] առ նա,
և ամենայն սուրբք յԵդեմ [12] հանգիցեն, և ի նոր

1. Ա. աղտոյ լինել միւս ոգւոյն մոլորութեան. Բ. չարութեամբ (Գ. չարութեան) աղտով լինել միւս ոգւոյ մոլորութեան:
2. Ա. Բ և Գ. զի:
3. Ա. լինիցին:
4. Ա. Բ և Գ. նոցա (Գ. քահանայից) լինին. (Գ. լիցին:)
5. Ա. Բ և Գ. յաղագս այսորիկ երթիջիք:
6. Ա և Բ. առնուցուք զամենայն վէրս:
7. Բ. զխաղաղութիւն. Գ. ի խաղաղութիւն.
8. Ա. Բ և Գ. ցեղէ ի ցեղէն Յուդայի և ի Ղեւեայ փրկութիւն Տեառն:
9. Ցայլս չիք Իսրայելի:
10. յԳ. պակասէ երկու տող. Ա. և Բ. ունին զբովանդակն՝ այլ ոչ զնոյն կարգ:
11. Բ և Գ. կարդասցեն. Ա. կարդայցեն:
12. Ա. Բ և Գ. յԵդեմ հանգիցեն սուրբք:

Երուսաղէմ ուրախ եղիցին արդարք, որ է ի փ
Աստուծոյ մինչեւ յաւիտեան։ Եւ ոչ ևս եղիցի Եր
սաղէմ աւերակ, և Իսրայէլ ոչ գերեսցի, և Տ
եղիցի ի միջի նոցա և ընդ մարդկան շրջեսցի։
սուրբն Իսրայելի թագաւորեսցէ ի նմա խաղաղ
թեամբ[1] և տնանկութեամբ. և որ հաւատասցէ ի
թագաւորեսցէ ճշմարտութեամբ մինչեւ յաւիտեան
Եւ այժմ երկերուք ի Տեառնէ, որդեակք իմ,
հայեցարուք ի ձեզ և պահեցէք զձեզ ի սատան
և ի չար չնչոյ նորա, և մերձեցարուք յԱստուած,
հրեշտակ նորա խնայէ[3] ի ձեզ. վասն զի նա մ
նորդ է Աստուծոյ և մարդկան, և ի վերայ խաղ
ղութեան Իսրայելի և ընդդէմ թշնամութեան թ
գաւորաց նա կացցէ[4]. և յաղագս[5] այսորիկ փ
թայ թշնամին գայթագղեցուցանել զամենեսեան
կարդան[6] զանուն Տեառն[7]. և ի վախճան եկեղ
թագաւորութիւն թշնամւոյն. վասն զի նոյն ինք
հրեշտակն խաղաղութեան զօրացուցանէ զԻսրայէլ,
մի՛ անկանել նմա ի չար կատարածի[9]։ Եւ եղիցի
ժամանակի անօրէնութեան Իսրայելի մերժեսցի ի
ցանէ Տէր և եկեսցէ ի հեթանոսս. և զկամս ի
կատարեսցէ. վասն զի ոչ ոք ի հրեշտակաց հաւա
նմա. և անուն նորա եղիցի ընդ ամենայն երկիր
ընդ Իսրայէլ։

Արդ պահեցէք զձեզ, որդեակք իմ, յամենայն գոր
ծոց[10] չարաց, և ընկեցէք ի ձէնջ զստութիւն և զամենայ
սրտմտութիւն. և զոր ինչ լուայք ի հօրէ ձերմէ՝ ասաց
որդւոց ձերոց, զի ընկալցի զձեզ փրկիչն հեթանոսաց
վասն զի ճշմարիտ է և երկայնամիտ, հանդարտ և խո

1. Ա և Բ. խոնարհութեամբ և տնանկութեամբ։
2. Ա և Բ. յերկինս։
3. Բ. խնայեսցէ։
4. Ա և Բ. կեցցէ։
5. Գ. վասն։
6. Ա և Բ. կարդասցեն։
7. Ա և Բ. յաւելուն. վասն [illegible] յորում հաստա- տեսցի Իսրայէլ՝ ի վախճանի.
8. յԱ և յԲ. չիք ինքն։
9. Ա և Բ. կատարած։
10. Ա և Բ. երաց։

·րհ, և ուսուցանէ գործովքն Աստուծոյ զօրէնս: Արդ
բաց կացէք յամենայն անօրէնութենէ[1] և մերձե-
·րուք յարդարութիւնն Աստուծոյ[2], և եղիցի ազգն
ր ի փրկութիւն յաւիտեան. և թաղեցէք զիս մերձ
ւ հարսն իմ: Եւ զայս ասացեալ համբուրեաց զնո-
՝ և ննջեաց քուն յաւիտեան[3]. և թաղեցին զնա որ-
քն իւր[4]. և յետ այնորիկ բերեալ[5] եղին առ Աբ-
ւհամու, Սահակայ և Յակոբայ: Բայց սակայն մար-
որէացաւ վասն նոցա թէ մոռացին զօրէնսն Աս-
ւծոյ իւրեանց[6] և ի հայրենեաց իւրեանց:

Գ. անօրէնութեանց:
Գ. Տեառն. մԱ. չէք.
Ա. Բ և Գ. յաւելուն Եւ արդ արդարեւ իմ Թողլիցէ զնա Տէր առ հարս իմ. և զայս ասացեալ համբուրեաց զնոսա և ննջեաց քուն յաւիտենական. և թաղեցին:

4. Ա և Բ. նորա:
5. Ա և Բ. բերին և եդին Տէրն առ Աբրահամ և Իսահակ և Յակոբ. Գ. բերին առ Աբրահամ:
6. Ա. Բ և Գ. յաւելուն և օտարացին յերկիր ծառայութեան իւրեանց, և ի:



# ԿՏԱԿ ՆԵՓԹԱՂԻՄԱՅ[1]



Հրաման պատասխանոյ[2] կտակին Նեփթաղիմայ, զոր արար ի ժամանակի իւրում, յամին հարիւր և երեսներորդի կենաց իւրոց։ Եկին միաբան ժողովեցան[3] որդիք նորա՝ յեօթներորդ ամսեանն ի գլուխ ամսոյն. մինչ դեռ կենդանի էր արար ընթրիս նոցա և ուրախութիւն. և ի վաղիւն ի զարթնու նորա ի քնոյն ասաց ցնոսա. թէ Ահա[4] ես վախճանիմ և ոչ հաւատային[5] նմա. և օրհնելով զԱստուած զօրացաւ՝ ածելով զմտաւ եթէ զկնի[6], ընթրեաց երեկոյի վախճանիմ. և սկսաւ ասել ցնոսա. Լուարուք որդիք Նեփթաղիմայ՝ հօր ձերոյ. ես ծնեալ եղէ ի Բալլայէ վասն զի նենգութեամբ արար[9] Հռաքէլ, և ետ փոխանակ ինքեան զԲալլա[10] և ի վերայ բարձիցն Հռա.

1. Բն. Կտակ Նեփթաղիմայ որդւ-ւոյ Յակոբայ վասն բնական բարւոյ. Ա և Գ. Կտակ Նեփ-թաղիմայ վասն բնական բարու-թեան. Բ. բարւոյ։
2. Ա. Բ և Գ. պատասխանեաց Նեփթաղիմայ։
3. Յայլս չիք ժողովեցան։
4. Յայլս չիք Ահա ես։
5. Ա. Բ և Գ. հաւատացին։
6. Բ. յետ։
7. Բ. յերեկեանն. Ա և Գ. երե-կին։
8. Ա և Բ. որդեակք իմ։
9. Ա. Բ և Գ. փորձեաց։
10. Բ. յաւելու, զմայրն իմ յՅա-կոբ և։

ծնեալ եղէ[1]. և մինչ դեռ փափուկ[2] էի՝ համ-
ւոց զխս, ասելով. Բա՛յ[3] տացէ ինձ Տէր[4] եղ-
բեզ ի յարգանդէ իմմէ՝ նման քեզ։ Վասն[5]
ման[6] իսկ էի Յովսեփայ վասն աղօթիցն Հաւ.
. և մայր իմ Բալլա՝ էր դուստր Հաւթէի՝
Դեբովրայ դայեկին Հռեբեկայ[7]. որ և ի միում
չերի ծնեալ լինէին նա[8] և Հռաքէլ։ Եւ[9] Հաու-
էր յազգէն Աբրահամու քաղդէացի աստուա-
, յազատ և ի բարի ազգաց[10]. և գերի վարեալ
և գնեալ ի Լաբանայ. և ետ նմա զՋեննա[11]
ին իւր ի կնութեան, որ ծնաւ նմա դուստր,
աց զանուն նորա Զելփա՝ զանուն ագարակին՝
գերին լինէր վարեալ, և զկնի[12] նորա ծնաւ
ա, ասելով. Նորափոյթ դուստր իմ. վասն զի
ղակի[13] ծնեալ լինէր և բուռն հարեալ զատե-
ւ իւրոյ՝ և փութայր ծծել։
վասն զի թեթեւ էի ես որպէս զեղջերու, կար-
իս հայր իմ յամենայն առաքումն և ի հրեշտա-
ցութիւնս՝[14] վասն որոյ իբրեւ զեղջերու իսկ
ւոց զխս։ Եւ զոր օրինակ գիտէ բռուտն թէ որ-
անի ամանն՝ և նոյն քան բերէ զբարին, այս-
Տէր նմանութեամբ[15] հոգւոյն՝ առնէ զմարմին.
զօրութեան հոգւոյն դնէ զանձն[16], և ոչ ինչ
ալ յերաց[17], և ոչ եթէ սուղ մասամբ մաղոյ[18],
զի կշռաւ և չափով և կարգաւ են ամենայն

յայ. Բ. Եղև ես։ | 9. Ա. Բ և Գ. Եւ։
եռակ։ | 10. Բ. ազգի։
և Գ. Եբեր։ | 11. ՃԲ. պակասէ Ջեննա։
ուելոու զտառակ։ | 12. Բ. և զկնի։
Դ. յաղագս որոյ նման եւ | 13. Բ. վաղվաղակի փութով ծնեալ
Ա. վաղվաղակի ծնեալ, և։
և Գ. Հոգւոյ. Եւ | 14. Բ. և ի զբօսանութեանցութեանն։
։ | 15. Ա և Բ. նմանութեան.
ուելոու հույն խոստոյ. | 16. Ա. Բ և Գ. զմարմին։
Գ. որովև։ | 17. Բ և Գ. յերկրաց...
յին Բալլա, և։ | 18. Բ. եթէ և զմաղոյ։

ստացուածք բարձրելոյն։ Եւ որպէս[1] գիտէ բրու
զիւրաքանչիւր ուրուք զպէտսն, եթէ ո՞ր բաւակ
լինի․ այսպէս և Տէր ըստ նմանութեան հոգւոյն ա
նէ զմարմինն, եթէ մինչեւ ցո՞ր վայր բաւական լի
բարւոյն, և կամ յերբեաց հետէ սկիզբն առնէ չար
յաղագս որոյ ոչ իսկ է ամենայն ստեղծուածն[2],
զամենայն մտածութիւն զոր ծանեաւ Տէր, և զամ
նայն մարդ ստեղծ ի կերպարանս իւր․ զոր օրին
է զօրութիւն նորա՝ նոյն է և գործք նորա․ և որպէ
միտքն նոյնպէս և արուեստք նորա[4]․ և որպէս
նոյնպէս և քուն իւր, և որպէս հոգին՝ նոյնպէս
բանն իւր կայ[5], կամ յօրէնս Տեառն և կամ
գործս բելիարայ։ Եւ զոր օրինակ մեկնեալ է ի
լուսոյ և խաւարի, և լսելեաց և տեսանելեաց, ա
օրինակ բաժանեալ է ի մէջ առն և առն՝ ի մէջ կնոջ
կնոջ․ և ոչ է[6] ասել միոյ միոյ կամ դիմօք կամ մ
նման։ Զամենայն ինչ կարգաւ արար Աստուած բ
րի, հինգ զգայարանս ի գլուխն եդ[7], և զպարան
ի նմա պատշաճեաց, և հերս վասն փառացն և արտ
ուրախութեան, և զորովայնն յընտրութիւն ստամ
սին, զփողսն[8] յառողջութիւն, զլեարդն առ ի սր
մրտութիւն, զլեղին առ ի դառնութիւն, զփայծաղն
ի ծաղր, զերիկամունսն ի զօրութիւն, ի դնել զ
զկողսն ի զօրութիւն․ և[9] այլն ամենայն որ ի նմա։ Ա
պէս եղիցին, որդեակք, ամենայն գործք ձեր կարգ
ւոր[10] ի բարիս և յերկիւղն Աստուծոյ[11], և մի ինչ ա
կարգ առնէք և արհամարհանօք[12], և մի ինչ արտա

1 Ա․ Բ և Գ․ և զոր օրինակ... Եւ որպէս բնաւական...
2․ Գ․ ստացուածն։
3․ Ուղղեցաւ ըստ երից օրից, զի բնագիրն ունէր և երկնիցն։
4․ Ա և Բ․ իւր
5․ յԱ և յԲ․ չիք կայ։
6․ Բ․ է նման մին միոյ դիմօք կամ մօօք։
7․ Չիք յայլ օրինակս եդ։
8․ Բ․ զփողսն զլերբին և զն[illegible] յառողջութեան։
9․ Ա և Բ․ և զայլն որ ինչ ն[illegible] նման է․ այսպէս։
10․ Ա և Բ․ կարգեաւ։
11․ Գ․ Տեառն։
12․ Ա և Բ․ արհամարհելով։

ժամանակաց ձերոց: Զի եթէ ասասցես ցակն[1] քո՝ լուր, ոչ կարէ, այսպէս և ոչ կարէ խաւար գործել զգործս լուսոյ: Արդ մի՛ փութայք ապականել զերկիր ագահութեամբ ի գործս ձեր, կամ ընդունայն բանիւք խաբել զհոգիս ձեր, վասն զի հլու[2] լեալ յստակ սրտիւ իմասջիք առնել զկամս Աստուծոյ[3], և ի բաց ընկենուլ զկամսն սատանայի[4]: Արեգակն և լուսին և աստեղք ոչ խափանեն զկարգս[5] իւրեանց. այսպէս և դուք մի՛ փոխէք[6] զօրէնս Աստուծոյ՝[7] անկարգութեամբ գործոց ձերոց. հեթանոսք մոլորեալք թողին զՏէր, փոխեցին զկարգս իւրեանց և չոգան զհետ քարի և փայտի[8], և զկնի երթալ ոգոյն[9] մոլորութեան:

Իսկ դուք մի՛ այդպէս[10], որդեակք իմ, ծաներուք զհաստատութիւն երկնի և ծովու և զամենայն[11] արարածոցս զՏէրն՝ զարարիչն այսր ամենայնի, զի մի՛ լինիցիք իբրև զՍոդոմ, որ փոխեաց զկարգ բնութեան իւրոյ. Նոյնպէս[12] և զուարթունք փոխեցին զկարգ բնութեան իւրեանց, զորս անէծ Տէր ի ժամանակի ջրհեղեղին վասն Նոցա. յայլ[13] բնութիւն զպղծոց կարգեալս և զերկիր անբանականս[14]: Զայս ասեմ ձեզ, որդեակք իմ, վասն զի կարդացի[15] ես ի գիրսն սրբոյն Ենովքայ, զի և դուք ի բաց կալոց էք ի Տեառնէ՝ գնալով ըստ ամենայն անօրէնութեան հեթանոսաց[16] զՍոդոմայեցւոց. և ածցէ Տէր ի վերայ

1. Ա և Բ. ականջ լսէ (Ա. լսոր). Գ. ցականջ:
2. Բ. հայելի լեալ:
3. Բ. Տեառն Աստուծոյ:
4. Ա և Բ. բանսարկուին:
5. Ա և Բ. զկարգս:
6. Ա և Բ. խափանէք:
7. Գ. Տեառն:
8. Բ. փայտի պաշտաման զհետ երթալն
9. Ա. ի գերմս մոլորութեան
10. Բ. այդպէս:
11. Ա և Բ. յամենայն արարածս զՏէր:
12. Ա. Բ և Գ. Նմանապէս:
13. Ա. այլ:
14. Ա և Բ. անբանական:
15. Ա և Բ. կարդացեալ ի գիրսն:
16. Ա. Բ և Գ. յաւելուն և անիցէք ըստ ամենայն չարութեան հեթանոսաց:

ձեր գերութիւն, և ծառայեցէք թշնամեաց ձերոց, և ամենայն չարչարանաց և նեղութեանց խոնարհեսջիք. մինչեւ ծանիցէ [1] Տէր զամենեսեան զձեզ, և յետ սա- կաւանալոյ ձերոյ և փոքրանալոյ՝ դառնայցէք և ծա- նիջիք զՏէր Աստուած ձեր, և դարձուսցէ զձեզ յեր- կիր ձեր՝ ըստ բազում ողորմութեան իւրում [2]: Եւ եղիցի յորժամ եկեսցեն որդիքն [3] ձեր յերկիր հարցն իւրեանց, դարձեալ մոռասցին զՏէր և ամբարտա- ւանեսցին [4], և ցրուեսցէ զնոսա Տէր ընդ ամենայն ե- րեսս երկրի մինչեւ եկեսցէ Տէր գթութեամբ [5]. և մար- որ առնէ ողորմութիւն և արդարութիւն ընդ ամենե- սեան՝ որք եթէ հեռի են կամ մերձ: Վասն զի յա- մի քառասներորդի կենաց իմոց, տեսի ի լերին ձի- թենեաց յարեւելից կողմանէն Երուսաղեմի, զի կայի- արեգակն և լուսին, և ամենեքեան [6] ընթացաք. և ահա Իսահակ հայր հօր մերոյ [7] ասաց ցմեզ. Ընթա- ցեալ կալարուք իւրաքանչիւր [8] ըստ զօրութեան ան- ձին իւրոյ: Եւ յընթանալն մերում Ղեւի կալաւ զա- րեգակն և Յուդա [9] զլուսին, և համբարձան երկոքինն [10] ընդ նոսա: Եւ մինչ դեռ ունէր Ղեւի զարեգակն՝ [11] ե- րիտասարդ ոմն ետ նմա ոստս երկոտասան արմա- ւենոյ. և Յուդա էր պայծառ որպէս զլուսին, և ի ներքոյ ոտից նորա [12] երկոտասան ճառագայթք. և ընթացեալ առ միմեանս Յուդա և Ղեւի՝ բուռն հա- րին զմիմեամբք [13] և ահա զուարակ մի ի վերայ երկրի, և ունէր երկոտասան [14] եղջիւրս մեծամեծս, և թեւ- արծւոյ ի վերայ ողին նորա. և կամեցեալ մեք ունել զնա՝ ոչ կարացաք, բայց Յովսէփ առ զնա և ելքնդ նմա

1. Ա և Բ. ծախիցէ:
2. Ա և Բ. իւրոյ:
3. Յայլս չիք որդիքն ձեր.
4. Ա և Բ. ամբարշտեցին:
5. յԱ և յԲ. չիք գթութեամբ:
6. Բ. յաւելու մեք:
7. Ա. Աբրահամ:
8. Ա. Բ և Գ. իւրաքանչիւր ոք:
9. Ա և Գ. ընթացեալ կալաւ. Բ. ընթացաւ կալաւ:
10. Ա և Բ. երկնաւորանն:
11. Ա և Բ. զարեգակնն:
12. Ա. յաւելու էին. Բ. յաւելու որդւոց:
13. Ա. զմիմեանց. Բ. զմիմեանս:
14. Ա և Բ. երկոտան:

ի բարձունս. և տեսի զնա զի էր ի դրախտն[1] և ահա գիրք սուրբք երևեցան մեզ՝ և ասէին. Ասխացիք և Պարթևք, Պարսիկք[2] և Իլամացիք[3], Ասորիք և Գաղատացիք ժառանգեսցեն ի զերութեան զերկոտասան ազգն Իսրայելի։

Եւ դարձեալ զհետ եօթն[4] ամաց, տեսի զհայրն իմ զՅակոբ՝ զի կայր ի վերայ ծովուն Յամնիացւոց, և մեք որդիքս Նորա ընդ Նմա. և ահա Նաւ գայր առաջաստեալ՝ լի ձկամբք առանց Նաւորդի և ղեկավարի. և էր գրեալ ի Նաւին՝ Յակոբայ։ Եւ ասէ ցմեզ հայրն մեր. Ելցուք ի Նաւս մեր։ Եւ ելաք ընդ[5] Նմա ի Նաւն, և եղև ձմեռն և[6] մրրիկ յոյժ ի ծովուն. և որպէս թէ թռեաւ հայրն մեր ի մէնջ, որ ունէր զթևս Նաւին, և մեր ամբոխեալ՝ ի մէջ[7] ծովուն երթեալ լինէաք. և լցաւ Նաւն ջրով յերից ալեաց մանրեալ՝ մինչև փըշրեալ Նաւին. և Յովսէփ մակուկաւն փախուցեալ, և Յուդա և Ղևի կային[8] ի միջոցն, և ցրուեցաք ամենեքեան մինչև ի ծագս երկրի։ Եւ Ղևի արկեալ զիւրեաւ խորգ, պաղատէր վասն մեր առ Տէր։ Եւ եղև իբրև դադարեաց ձմեռն, մակոյկն եհաս յերկիր խաղաղութեամբ[9]. և ահա եկեալ հայրն մեր Յակոբ՝ և միաբան ամենեքեան ցնծացաք։ Զայս զերկոսին երազս պատմեցի հօրն իմոյ[10]. և Նա ասաց ցիս[11]. Պարտ է այդմ[12] ամենայնի կատարիլ ի ժամանակի իւրում, և բազում ինչ Իսրայելի համբերել վշտաց[13]։ Յայնժամ ասէ ցիս հայրն իմ. Յուսամ ի Տէր եթէ կենդանի

1. Ա. ի դրախտի։
2. ԺԱ և ԺԲ. չիք Պարսիկք։
3. Բ. Ելամացիք։
4. Ա. ամաց եօթանց. Բ. յետ եօթն ամաց։
5. Յայլս չիք ընդ Նմա ի Նաւն։
6. ԺԱ և ԺԲ. չիք և մրրիկ յոյժ ի ծովուն։
7. Ա և Բ. ի միջածովուն. Գ. մեծածովուն։
8. Ա և Բ. կէսն ի մէջն.
9. Ա և Բ. խաղաղութեան։
10. Բ. յաւելու հօրս Յակոբայ։
11. Ա և Բ. և ասաց ցիս։
12. Այլք դմա։
13. Այլք չունին վշտաց։

է Յովսէփ և ես ոչ տեսանեմ զնա, վասն զի տեսա
նեմ եթէ տէր ընդ ձեզ համարի զնա։ Եւ լալով ասէ
հանապազ. Կենդանի ես, Յովսէփ որդեակ իմ, և ես ո
տեսանեմ զքեզ. ետ և մեզ արտասուս հեղուլ վասն
բանիցս այսոցիկ[2]. և դարձեալ ասէ. Եւ դու ոչ տե
սանես զՅակոբ որ ծնաւ զքեզ. և խարշէին աղիքս ի
և կամէի պատմել նմա եթէ վաճառեցաւ, այլ երկնչէ
յեղբարցն իմոց։

Արդ ահա, որդեակք իմ, ցուցի ձեզ զժամանակ
յետինս՝ զի ամենայն ինչ լինելոց է յԻսրայելի,
դուք պատուիրեցէք որդւոց ձերոց[3], զի միաբանե
ցին ընդ Ղեւեայ և ընդ Յուդայի. զի ի ձեռն Յո
դայի ծագեսցի փրկութիւն Իսրայելի, և նովաւ օրհ
նեսցի Յակոբ. քանզի գաւազանաւ նորա երեւեսց
Աստուած բնակեալ ընդ մարդկան ի վերայ երկրի
կեցուցանել զամենայն ազգն Իսրայելի, և ժողովել
զարդարս[5] ի հեթանոսաց։ Եթէ գործիցէք զբարիս, որ-
դեակք իմ, օրհնեսցեն զձեզ մարդիկ և հրեշտակք[6]
և Աստուած փառաւորեսցի ի մէջ հեթանոսաց վասն
ձեր, և բանսարկուն փախիցէ ի ձէնջ, և Տէր սի-
րեսցէ զձեզ և հրեշտակք օգնական եղիցին ձեզ. զո
օրինակ եթէ ոք զորդիս իւր զգուշութեամբ սնուցեալ[7]
իցէ՝ բարի յիշատակ ունիցի. այսպէս և բարի գործ
առ Աստուած բարի ունիցի[8] յիշատակ։ Իսկ որ ոչ
ունիցի գործս բարիս, անիծեսցեն զնա հրեշտակք և
մարդիկ. և Աստուած ոչ փառաւորեսցի ի մէջ հեթա-
նոսաց վասն նորա. բանսարկուն նմա[9] ընտանենայ
իբրեւ ընդ ինքեան անօթոյ, և ամենայն գազանք տի

1. Ա և Բ. յաղագս այսորիկ. Բ. յաւելու և փեղչեանս։
2. Տող մի պակասէ յԱ և յԲ. մինչև և խորշիմ։
3. Բ. յաւելու և որդիքն յետ խորհրդոյ որդւոցն։
4. Գ. ժողովեալ։
5. Ա և Բ. զանձնային զարդարս։
6. Երկու տողք պակասին յԱ և յԲ. մինչև և հրեշտակք.
7. Ա և Բ. սնուցանէ (Ա. ... գնէ ոք)։
8. Ա և Բ. ունին, այսպէս և յ... տոյ։
9. Չիք. յԱ և յԲ. Նմա։

ատեաց նմա, և Տէր ատեաց զնա։ Վասն զի ամենայն[1] պատուիրանք Տեառն կրկին[2] են, արուեստիւ կարգի. վասն զի ժամանակ է մերձենալոյ ի կին իւր, և ժամանակ ժուժկալութեան և աղօթս առնելոյ, և երկրորդին[3] սոքա պատուիրանք են։ Եւ եթէ ոչ եղիցին ի կարգս իւրեանց՝ զմեղս կատարեսցեն[4]. այսպէս և ամենայն պատուիրանք։

Արդ, եղերուք իմաստունք Աստուծոյ և խելամուտ, գիտելով զկարգ պատուիրանաց[5] նորա, և զհաստատութիւն ամենայն իրաց, զի Տէր սիրեսցէ զձեզ։ Արդ, բազում ինչ այսպիսի[6] պատմեալ նոցա, և աղաչեաց զի տարցեն զոսկերս նորա ի Քեբրոն և թաղեսցեն ընդ հարս նորա։ Կերեալ և արբեալ զօրութեամբ[7] անձին իւրոյ, և ծածկեալ[8] զերեսս իւր՝ վախճանեցաւ։ Եւ արարին որդիքն նորա ըստ ամենայնի՝ զոր պատուիրեաց նոցա Նեփթաղիմ հայրն իւրեանց։

1. Չիք ՛ի Ա և ՛ի Բ. ամենայն։
2. Ա և Բ. կրկնապատիկ են. Գ. կրկնակի են։
3. Բ. երկրորդն. Ա. երկրորդան։
4. Այլք կատարեն այսպէս և ամենայն։
5. Ա. պատուիրանի։
6. Բ և Գ. այսպիսի պատուիրեալ. Ա. պատուիրեաց։
7. Ա և Բ. զօրութեամբ։
8. Այլք ծածկեաց։



# ԿՏԱԿ ԳԱԴԱՅ[1]

Հրաման պատասխանւոյ[2] կտակին Գադայ որդւոյն Յակոբայ, զոր խօսեցաւ ընդ որդիսն իւր ի հարիւր և ի քսան և ի հինգ ամի կենաց իւրոց[3]: Ժողովեաց զորդիսն իւր և զդստերս՝ և ասէ ցնոսա. Ինններորդ որդի եղեալ եմ ես Յակոբայ, և[4] զօրաւոր ի վերայ հօտիցն, և[5] ես պահէի զհօտն. և մինչ[6] գայր առեւծ կամ ինձն և կամ արջ և կամ ամենայն գազանք որ յարձակէին ի վերայ հօտին, և հալածէի[7] զնոսա. և ես կալեալ ձեռօք[8] իմովք զոտանէ նոցա և շուրջ ածեալ զինեւ ցնորեցուցանէի զնոսա[9], և ձգէի իբրեւ երկուս ասպարէզս. այսպիսի այր էի ես: Իսկ Յովսէփ հովուէր[10] ընդ մեզ իբրեւ աւուրս երեսուն. և վասն զի փափուկ էր ինքն՝ հիւանդացեալ լինէր ի խորշակէն. և դարձաւ[11] ի Քեբրոն

1. Ամենայն օրք. Կտակ Գադայ վասն ատելութեան. ԲՆ. յաւելու Աստուածոյ զոր եղեւ:
2. Այլք պատասխանեաց կտակի Գադայ՝ զոր...
3. Ցայլս պակասէ տող մի մինչև աստ:
4. Բ և Գ. և չէ:
5. յԱ և յԲ. պակասի և ես պահէի զհօտն:
6. Ա. Բ և Գ. յորժամ:
7. Ա. Բ և Գ. հալածէին:
8. Ա. Բ և Գ. յետամբ իմով:
9. Ա և Բ. չունին զնոսա. Բ. յաւելու խելագարեալ:
10. Ա և Բ. հովիւ էր:
11. Ա և Բ. դարձեալ:

առ հայր իւր, և կոչմեալ լինէր մերձ առ հարքն, վասն զի յոյժ սիրէր զնա։ Եւ ասէ Յովսէփ ցհայր իւր, եթէ որդիքն Բալլայ զենուն զընտիր ընտիրսն և ուտեն զնոսա առանց Ռուբենի և Յուդայի։ Վասն զի[1] զառն մի ապրեցուցի[2] ի բերանոյ արջուն, զարջն սպանի, և զզառն զենի՝ զի[3] ոչ էր ապրանաց, և կերաք զնա. զայն[4] տեսեալ Յովսեփայ ասաց հօրն, և մեք բարկացեալ ընդ Յովսեփայ վասն բանիցս այսոցիկ. մինչ զի[5] և ոչ կարէի աչօք անգամ տեսանել զՅովսէփ և ոչ ականջօք լսել վասն Նորա։ Եւ[6] առաջի մեր յանդիմանեաց զմեզ՝ զի առանց Յուդայի կերաք[7] զզառն. և զամենայն զոր ինչ ասէր Յովսէփ՝[8] հայրն մեր Յակոբ հաւատայր Նմա։

Արդ, որդեակք իմ, խոստովանիմ զմեղս իմ զի բազում անգամ կամեցայ սպանանել զնա և հոգւով ատէի զնա. և ամենեւին ոչ էր յիս սիրտ ողորմութեան ընդ[9] Նմա. և առաւել վասն երազոց Նորա[10] յաւելաք զատելութիւնն. և կամէի ջնջել զնա[11] զոր օրինակ ջնջեալ լիզէ[12] արջառ զդալարի ի վերայ երկրի. վասն[13] որոյ ես և Շմաւոն վաճառեցաք զնա Իսմայելացւոցն երեսուն դահեկանի, զտասն թաքուցաք և զքսանն ցուցաք եղբարցն մերոց. և այսպէս ագահութեամբ լի էի ես վասն Նորա սպանմանն. և Աստուած հարցն մերոց[14] փրկեաց զնա ի ձեռաց իմոց՝ զի մի արարից անօրէնութիւն[15] ի մէջ Իսրայելի։ Եւ այժմ, որդեակք իմ, լուարուք զբանս ճշմարտութեան և

1. Ա. Բ և Գ. յաւելուն Եղեւ զի։
2. Ա. զանձնեցուցի. Բ. վերծուցի։
3. Ա. Բ և Գ. վասն որոյ խռովեալ էր (Բ. վասն զի սրտմտեալ էր) զի ոչ ապրէր և կերաք զնա։
4. Չիք յայլս մինչև և բարկացեալ։
5. Յայլս չիք մինչ զի։
6. Բ և Գ. վասն զի։
7. Ա. Բ և Գ. սպանեալ (Գ. կերաք) զխոզին։
8. Չիք յայլս Յովսէփ և Յակոբ։
9. Ա. վասն նորա։
10. Չիք յայլս նորա։
11. Յաւելուն այլք յերկիր։
12. Ա և Բ. լիզա։
13. Բ. յաղագս որոյ. Գ. յաղագս նորին. յԱ. չիք։
14. Ա. Իմ. յԲ. չիք
15. Բ. անիրաւութեան։

գործեցէք զարդարութիւն և զամենայն բանս բարձրելոյն, և մի՛ մոլորիք[1] ոգւով մոլորութեան. վասն զի չար է յամենայն գործս մարդկան, զի զամենայն ինչ զոր առնէ ատեցողն՝ պիղծ[2] թուի նմա, և որ առնէ զօրէնս Տեառն ամենեքեան գովեն զնա. և եթէ երկրնչի ոք ի Տեառնէ և կամի զարդարութիւն, զայնպիսին ո՞վ է որ ոչ սիրէ։ Որ զճշմարտութիւնն պարսաւէ՝ պղծէ զճանապարհս իւր, որ[3] նախանձի՝ ունայնութեան[4] երկրպագէ և զամբարտաւանութիւնն սիրէ. վասն զի ատելութիւն կուրացոյց զսիրտս նորա. զոր օրինակ և ես հայէի ընդ Յովսէփ։ Արդ պահեցէք զձեզ, որդեակք իմ, յատելութենէ, վասն զի ի նոյն ինքն ի Տէր տայ անիրաւել[5], զի ոչ կամի լսել պատուիրանաց նորա վասն սիրոյ մերձաւորին. յԱստուծ մեղանչէ՝ վաղվաղակի կամի պատմել ամենեցուն, և փութայ վասն զի դատապարտեսցի՝ վասն որոյ և տանջեալ մեռցի. և եթէ իցէ ծառայ որ չմբրախօսեսցէ[6] զնմանէ առ Տէր իւր, և ընդ ամենայն նեղութիւնս ձեռնարկէ անցուցանել զնա, և կամի[7] թէ որպէս սպանցէ զնա. վասն զի ատելութիւն գործակից լինի նախանձու և ընդդէմ զինի բարեգործացն հանապազ։ Վասն զի զյաջողութիւն[8] նոցա հանապազ լսելով. և զոր օրինակ սէր զմեռեալս կամի կեցուցանել, և յորոյ վերայ վճիռ մահուն կայ՝ կամի վերստին կոչել, այսպէս և ատելութիւն զկենդանին կամի սպանանել՝ և ընդ սակաւ ինչ յանցմանց ոչ կամի թէ կեցցէ. վասն զի ոգին ատելութեան և նեղասրտութեան՝ գործակից լինի սատանայի յամենայն ի մահ մարդկան. իսկ հոգին սիրոյ և երկայնմտութեան գործակից լինի պատուիրանաց Աստուծոյ ի

1. Գ. մոլորէցէք։
2. Ա և Բ. պղծութեան է նմա։
3. յԱ. յԲ և յԳ. չէք որ։
4. Ա. Բ և Գ. զի ունայնութեան։
5. Ա. Բ և Գ. անօրինել։
6. Գ. չարախօսեսցի զնմանէ Տէր իւր։
7. Բ. խորհի։
8. Գ. զատելութեան. Ա և Բ. զյա[...] ջողութեանս... լսելով և փ[...] ատելով հեռանդանոյ, և...։

կեշտ և նմա վայելէ ։ Եւ Յովսէփ էր այր զօրաւոր ութեամբ և հանճարով, զի հոգի Աստուծոյ և ; Տեառն են ընդ նմա ։ Արդ[1] եկ այժմ, որդեակ զքեզ նմա ի կնութեան, և ի հարստութիւն[2] եղիցի փեսայութեան յաւիտեանս ժամանակաց ։ Եւ եղ րեւ լուաւ Ասանէթ զբանն հօրն իւրոյ, այլայ ցաւ[3] երես նորա, և տրտմեցաւ յոյժ բարկութեա խեթիւ հայելի հայէր ։ Խօսեցաւ Ասանէթ և ասէ իմ հայր, ըստ բանիցս այսոցիկ տալ զիս իբրե րի առն այլազգոյն և փախստականի և[5] վաճա ո՞չ է նա[6] որդի հովուաց յերկրէն Քանան և[7] յանդիմանեալ եղեւ անձամբ ննջելով ընդ նոյն իւրում. և տէր նորա, արկ զնա ի բանտ ի րին. թէ և եհան զնա ի բանտէն թագաւորն մեկնեաց զերազ նորա, զոր օրինակ մեկնեն կ պառաւունք Եգիպտացոցն. ոչ եղիցի այդպէս ամուսնացայց ընդ անդրանիկ որդւոյն Փարա վասն զի նա է թագաւոր ամենայն Եգիպտոս պատկառեաց[9] Պետափրէս դարձեալ խօսել ընդ տերն իւրոյ վասն Յովսեփայ. զի[10] յանդգն և բարկութեամբ արար պատասխանի ։ Եւ ա ծառայ գայր առ Պետափրէս և ասէ. Ահաւասիկ սէփ առ դուրս մերձ կայ գաւթիս ։ Եւ Ասանէ խեաւ յերեսաց հօր և մօր իւրոյ, յորժամ

1. Ա. որդեակ իմ, այժմ լուր ինձ և տայց ։
2. Ա. և նա եղիցի +եղէ փեսայու-թեան ։
3. Ա և Գ. լուսաւորանեցան երեսք նորա ։
4. Ա և Գ. որդմանեան մե և եկեալ հայեցաւ ընդ հօրն իւրոյ և ասէ. ընդէ՞ր խօսեցար Տէր իմ և հայր իմ ընդ բանիցս այսոցիկ ։
5. Ա. յաւելու ծառայի ։
6. Ա. ոչ որդի հովուին ։
7. Ա. որ . . . ննջէլ ։
8. Ա. փարաւոն, վասն զի
9. Ա և Գ. պատկառեր . . . րեն դարձեալ ։
10. Ա. զի յանդգնա բարկութ ամբարտաւանութեամբ պատասխանին. և ըն երեսդ . . . մի է ծա Պետափրէի . . առ դա կայ. Գ. և ահա մի ամ ցեալ է ծառայիցն ։

ամնն[1] զայն որ խօսէին զնա վասն Յովսէփայ. և
ր ի վերնատունն և եմուտ ի սենեակ իւր: Եւ ե-
ւաց ի պատուհան[2] իւր մեծ, որ հայէր ընդ յա-
եւելս, վասն տեսանելոյ Յովսէփ, յորժամ մտանէր ի
ուն հօր իւրոյ:

Եւ ելին[3] Պետափրէս և կինն և ամենայն ծառայք
որա ընդ առաջ Յովսէփայ և ամենայն սպասաւորք
ամնն. և բացեալ զդրունս դաւթին, որ հայէր ընդ
արեւելս, և մուտ Յովսէփ նստելով ի վերայ կառացն
արաւոնի. և էին լծեալ ի կառսն չորս ձիս սպիտակս
որեւ զձիւն՝ ոսկեսանձք ամենեքեան. և կառքն էին
ամենեւին[4] բոլորովին ոսկի: Եւ էր Յովսէփ զգեցեալ
պատմուճան սպիտակս և գեղեցիկ, և ձորձ անկանե-
լին[5] ծիրանի բեհեզոյ՝ ընդելուզեալ ոսկւով. և պսակ[6]
ոսկի ի գլուխ նորա, և շուրջ զպսակաւ կին երկոտա-
սան ակունք պատուականք, և ի վերայ ականցն էին
երկոտասան ոսկեղէն ճառագայթատարած[7] կերպա-
րանք. և գաւազան յահեակ ձեռին նորա. և յաջոյ
ձեռին[8] իւրում բարձր ոստս ձիթենեաց, յորում էր
պարարտութիւն պտղոց, և պտուղ ունէր պարար-
տութիւն սաստիկ: Եւ եմուտ Յովսէփ ի դաւիթն, և
փակեցան դրունքն ամենայն. և այր և կին մնաց[9]
արտաքոյ դաւթին. զի պահապանք դրանցն աղխեցին
դրունսն, և ոչ ումեք ետուն մտանել: Եւ եկին
Պետափրէս և կին իւր և ամենայն ազգականք նո-
րա, բայց ի յԱսանեթայ ի դստերէ[10] նոցա, և եր-
կիր պագին Յովսեփայ ի վերայ երեսաց իւրեանց
երկիր: Եւ Յովսէփ էջ ի կառաց իւրոց և ընկալան

1. Ա. զԹանան զայնոսիկ վասն:
2. Ա և Գ. պատուհանին մեծի, որ:
3. Ա և Գ. Եւ ընդ առաւօտն Յովսէփայ Պետափրէս և կին նորա և ա-մենայն պաշտօնեայք նորա, և բացին զդրան դաւթին:
4. ՄԱ. չիք ամենեքին:
5. Ա. արքանեկայ նորա ծիրանի.
6. Ա. պսակ գլխոյ նորա, և:
7. Ա. ճառագայթ դարձուցեալ կերպարանօք.. Թագաւորական.. Գ. և Թագաւորական:
8. Ա. ունէր բարձր.. որ ունէր պարարտութիւն:
9. Ա. կացին:
10. ՄԱ. չիք ի դստերէ նոցա:

զնա ի գիրկս իւրեանց։ Եւ ետես Ասանէթ զՅովսէփ
և սիրեաց զնա ի սէր մեծ, և խորտակեցաւ ան
Նորա, և լուծան ծունկք Նորա, և դողայր ամենայ
մարմին Նորա, և աՀ մեծ անկաւ ի վերայ Նորա,
յերկիւղ սաստիկ երկեաւ Ասանէթ. յոգւոց եՀան
սրտէն և ասէ. Զի՞նչ գործեցից[1] այժմ ո՛վ թշուառ
ռականս. ո՞չ այժմ արՀամարՀելով խօսէին ընդ ի
Հայր և մայր իմ և ասէին թէ որդին Հովուին գ
առ մեզ յերկրէն Քանանացւոց, ո՞չ պատմէին[3] վա
Յովսեփայ. և սա իբրեւ զարեգակն եկն առ մեզ,
եմուտ ի տաճարս մեր. և ես անզգամս և յանդուգ
և անպէտս՝[4] արՀամարՀելով արՀամարՀեցի զնա,
Նարգելով, և խօսեցայ բանս չար վասն Նորա։ Ե
ոչ գիտէի թէ Յովսէփ իբրեւ որդի Աստուծոյ իցէ
քանզի ո՞վ ոք ի մարդկանէ ծնանիցի այսպէս գեղ
ցիկ. և յո՞րպիսմ[5] յարգանդէ երկնիցի այսպի
լուսաւոր մարդ. այլ ես Հէգս և անզգամս խօսեցա
ընդ Հօր իմոյ վասն Նորա բանս չարս. և այժ
ո՞ւր երթայց և թագեայց յերեսաց Նորա, զի
տեսցէ Յովսէփ սիրելին Աստուծոյ. վասն զի խօսե
ցայ բանս չար վասն Նորա. և ո՞ւր[6] թագեայց յե
րեսաց Նորա. ինձ այսպէս թուի, Նա զամենայն ծա
ծուկս տեսանէ, և ոչինչ թագչի և զանխլանի ի Նմա
Նէ, վասն լուսոյն մեծի որ ի Նմանէ է։ Եւ այժ
քաւեաց[7] զիս, տէր, ի Նմանէ, զի խօսեցայ վա
Նորա բանս չար անգիտութեամբ։ Եւ արդ տացէ զի
Հայր իմ[8] յաղախնութիւն և ի սպասաւորութիւն,
եղէց Նմա յաղախնութիւն յաւիտեանս յաւիտենից

Եւ եմուտ Յովսէփ ի տաճարն Պետափրէի, և Նստա
ի վերայ 'աթոռոյն. և լուացին զոտս Նորա, և եդի

1 Աստի թուղթ անկեալ յԱ. օրինակէն։
2. յԳ. չիք ընդ իս. չիք եւ յերկրէ Քանանացւոց։
3. Գ. յաւելու ճշմարտութեամբ։
4. Ձեռ. յԳ. անպէտս արՀամարՀելով։
5. Գ. ո՞ր արգանդ երկնեցի։
6. յԳ. չիք ո՞ւր թագեայց յերեսաց Նորա։
7. Գ. տարեալ։
8. Գ. յաւելու Յովսեփայ։

ևս սեղան առանձին, զոր ոչ ուտէր Յովսէփ ընդ եգիպտացիսն. վասն զի պղծութիւն համարէր ճաշակել ընդ նոսա։ Եւ ասէ Յովսէփ ցՊետափրէս և ցամենայն ազգականսն իւր. Ո՞վ է կինն այն որ կայ ի ընատանն, մերձ ի պատուհանն. ի բաց գնասցէ ապարանիցս յայսցանէ. զի երկնչէր Յովսէփ, զմտածէր այսպէս. մի՛ գուցէ աշխատեսցէ զիս. զի ձանձրացուցանէին զնա ամենայն[1] կանայք և դստերք մեծամեծացն Եգիպտոսի. յորժամ տեսանէին զՅովսէփ, չարաչար ախտանային վասն գեղեցկութեան նորա։ Բայց Յովսէփ արհամարհէր զնոքօք, և հրեշտակս զոր[2] առաքէին կանայքն Եգիպտացւոցն հանդերձ ոսկւով և արծաթով և ընծայիւք մեծամեծօք, բաց դարձուցանէր սպառնալեօք և թշնամանօք։ վասն զի ոչ մեղայց, ասէ, այլ առաջի Տեառն փրկչին Իսրայելի. և զկերպարանս Հօր իւրոյ Յակոբայ առաաչաց իւր կարգէր յամենայն ժամ[3]. վասն զի ասէր Յակոբ ցՅովսէփ և ցամենայն որդիսն. Պահեցէք զանձինս ձեր, որդեակք իմ, ի կանանց օտարաց, և ի չհաւասարելոյ ընդ նոսա. վասն զի հաւասարութիւն նոցա կորուստ է և ապականութիւն։ Վասն այսորիկ ասաց Յովսէփ. ի բաց երթիցէ կինն այն ապարանաց աստի։ Ասէ ցնա Պետափրէ. Զնա զոր տեսեր ի վերնատունն՝ ոչ է օտար կին, այլ դուստր իմ և ծառայ քո, կուսան[4] առն. և ոչ ոք ետես զնա արանց, բայց միայն ի քէն այսօր. եթէ կամիս՝ եկեալ երկրպագցէ քեզ. վասն զի դուստր մեր է որդա զքոյր քո։ Եւ ուրախ եղեւ յուրախութիւն մեծ աելն Պետափրեայ՝ եթէ կոյս է, և ասէ[5] ակնարկել ամենայն առն. և Յովսէփ խորհեցաւ ի մտի իւրում ասաց, թէ կոյս է և ասէ զամենայն այր, ոչ խաստ առնէ զիս։ Եւ ասէ Յովսէփ ցՊետափրէս և

1 Գ. չիք ամենայն։
2 Գ. զոր առաքէին առ նա։
3 Գ. յաւելու և ի չեկեր զկերպարանս Հօր իւրոյ։
4. Գ. կուսան որ ոչ երբէք անկեալ է յայն առն։
5. Գ. և ոչէ յայն անկանել ամենայն առն։

ցամենայն ազգատոհմն նորա. Եթէ դուստր քո է
կուսան եկեսցէ, զի[1] քոյր իմ է, և սիրեցից զն
յայսմ հետէ իբրեւ զքոյր իմ։ Եւ մայրն նորա
վերնատունն, և ած զԱսանէթ, և կացոյց զնա առ
Յովսեփայ։ Եւ ասէ Պետափրէս ցԱսանէթ դուստ
իւր. Ողջունեա զեղբայրդ քո. զի դա է կոյս իբր
զքեզ մինչեւ ցայսօր, և ատէ զամենայն կին՝ որպէ
և դու զամենայն այր օտար։ Եւ ասէ Ասանէթ ցՅո
սէփ. Ուրախ լեր տէրդ օրհնեալդ յԱստուծոյ բա
ձրելոյ։ Եւ ասէ Յովսէփ ցԱսանէթ. Օրհնեսցէ զք
տէր, որ կենդանի առնէ զամենայն ինչ։ Եւ ա
Պետափրէ ցդուստր իւր. Մատիր և համբուրեա
զեղբայրդ քո։ Եւ եղեւ իբրեւ մերձեցաւ Ասանէ
համբուրել զՅովսէփ, ձգեաց Յովսէփ զձեռն իւր
եդ ի վերայ կրծոց նորա, և ասէ. Ոչ վայել է[2] ա
տուածապաշտի որ օրհնէ զԱստուած[3] կենդանի, և ճ
շակէ զհաց օրհնեալ և զկենդանարար, ըմպէ զբաժ
օրհնեալ անմահութեան, օծանի օծմամբ անապական
թեան, համբուրել զկին օտարոտի, որ օրհնէ բեր
նով զկուռս մեռեալս և համերս, և ճաշակեալ ի ս
ղանոյ նոցա կերակուրս հեղձուցիկս, և ըմպէ ի ս
ղանոյ ի բաժակէ նոցա գինի նենգութեան, և օծ
նի օծմամբ կորստեան։ Այլ պարտ է առն աստ
ծապաշտի համբուրել զիւր բարեկամ և զբարեպ
մայր և քոյր, և զամենայն որ թէ ի ցեղէն իւ
իցէ և յազգէ, և զկին զանկողնակից իւր, և բե
նով իւրով խոստովանի զԱստուած կենդանի։ Նո
պէս և կնոջ բարեպաշտի ոչ վայել է համբուրել զ
օտարական. վասն զի պղծութիւն է առաջի Տե
Աստուծոյ։ Եւ իբրեւ լուաւ Ասանէթ զբան Յովսեփ
զղջացաւ յոյժ և տրտմեցաւ մեծապէս. յոգւոց հ
նէր և հառաչէր, և պշուցեալ ընդ Յովսէփ հեզն
ողորմածն և երկիւղածն յԱստուծոյ։ Եւ հայէր,

1. Գ. չիք զի քոյր իմ է։
2. Գ. յաւելու տուն։
3. Գ. զԱստուած և ճաշակէ զհ… օրհնեալ և զկենդանարար։

ցեան արտասուօք աչք նորա։ Եւ եսես զնա Յովսէփ, և ողորմեցաւ նմա. և ամբարձեալ զաջ ձեռն իւր Յովսէփ՝ և եդ ի վերայ գլխոյն Ասանեթայ, և ասաց. Տէր Աստուած հօր իմոյ Իսրայելի զօրաւոր և բարձրեալդ Յակոբայ, որ կենդանացուցեր զամենայն, և կոչեցեր ի խաւարէ ի լոյս, և ի մոլորութենէ ի ճըշմարտութիւն, ի մահուանէ ի կեանս. դու, Տէր, օրհնեա զ՚լոյսս զայս, և նորոգեա զսա հոգւովդ քո և ստեղծմամբդ [1] քո, վերստին կենդանացո զսա ծածուկ ձեռամբդ քո։ Եւ կերիցէ հաց կենաց, և արբցէ բաժակ կենդանութեան. և համարեա զսա ի ժողովուրդս քո, զոր ընտրեցեր յառաջ քան զլինելն ամենայնի, և մտցէ ի հանգիստ քո զոր պատրաստեցեր սիրելեաց քոց, և կացցէ ի կենդանութեան քում յաւիտեանս ժամանակաց։

Եւ ուրախ եղեւ Ասանէթ յօրհնութեան Յովսեփայ ուրախութիւն մեծ. և դարձեալ գնաց ի վերնատունն առանձինն, և անկաւ ի վերայ մահճաց իւրոց հառաչելով. վասն զի էր նորա ուրախութիւն և տըրտմութիւն և երկիւղ և դողումն և քրտունք սաստիկ. յորժամ լուաւ զամենայն բանսն Յովսեփայ, զոր խօսեցաւ ընդ նմա անուամբ Աստուծոյ բարձրելոյ, ելաց լալիւն մեծ դառնապէս, և զղջացաւ սիրտ նորա յաստուածոց իւրոց զոր պաշտէր, և ատեաց զամենայն կռուս իւր. և անսաց մինչեւ ի մերձենալ երեկոյին։ Եւ Յովսէփ եկեր և արբ. և ասէ ցմանկունսն ի լծեսցեն զձիս և զկառսն. վասն զի ասաց թէ երթայց ընդ երկիրս ընդ այս։ Եւ ասէ Պետափրէ ցՅովսէփ. Հանգիցէ տէր իմ այսօր աստ, և վաղիւն երթիցես զճանապարհն քո։ Եւ ասէ Յովսէփ. Ոչ այդպէս. այլ գնացից այսօր, վասն զի այս օր է յորում սկսաւ առնել Տէր զամենայն արարածս իւր։ Եւ յաւուրն եօթներորդի յորժամ դարձցի օրս այս՝ դարձայց և ես առ ձեզ, և [2] հանգեայց առ ձեզ։

Եւ գնաց Յովսէփ զճանապարհ իւր. և Պետափրէ

1. Գ. ստեղծ յետամբդ քո։ 2. յԳ. չիք. և հանգեայց առ ձեզ։

ընտանեօք իւր գնացին ի ժառանգութիւն իւրեանց. և մնաց Ասանէթ միայն հանդերձ եօթն կուսանօք. և ծանրանայր և լայր մինչև ի հաշել արեւուն. և հաց ոչ եկեր և ջուր ոչ էարբ: Եւ եղեւ իբրեւ մերձեցաւ գիշերն, և ննջէին ամենեքին որ ի տանն էին, և Ասանէթ միայն արթուն էր, և զմտաւ ածէր զՅովսէփ, և լայր և կոծէր[1] զկուրծսն սաստկապէս, և երկնչէր երկիւղ մեծ և դողայր ի դողումն սաստիկ: Եւ իբրեւ խաղաղացան ամենեքեան, յարեաւ Ասանէթ ի տախտէն իւրմէ, և էջ հանդարտ ընդ սանդուխն ի վերնատանէն, և եկն մերձ ի յերկանս երկանաղացն և երկանաղացն ննջէր հանդերձ որդւովքն. և փութացաւ Ասանէթ և քակեաց ի դրանց զխորգ վարագուրաց, և ելից զնա մոխրով ի հնոցարանէն. և հանեալ ի վերնատունն՝ եդ ի վերայ գետնոյն, և առեալ զդուրսն փակեաց դռնափակովքն. և հառաչեաց հառաչմամբ մեծաւ և արտասուօք: Եւ լուա դայեակն հանդերձ կուսանօքն՝ որ էին ընդ նմա սննդակից, զոր սիրէր Ասանէթ քան զամենայն կուսանսն[2]. եկին ի դուրսն Ասանեթայ, և գտին զդրունսն փակեալ, և լուան զհառաչանսն և զլալումն, և եկին ի դուրս նորա և ասէին. Զի՞ է քեզ, տիկին մեր Ասանէթ, և զի՞նչ է որ վշտացուցանէ[3] զքեզ. բաց մեզ և տեսցուք զի՞ եղեւ քեզ: Եւ ոչ եբաց Ասանէթ զդրունսն. բայց ի ներքուստ ասէ ցնոսա. Գլուխ իմ ծանրացաւ, և ոչ հանգչիմ յանկողնի իմում. և յառնել և բանալ ձեզ ոչ կարեմ. վասն զի տկարացայ յամենայն անդամոց իմոց. և դուք գնացէք յիւրաքանչիւր սենեակս և հանգերուք, և թոյլ արարէք ինձ, զի ես դադարեցից, և[5] սակաւ մի հանգիստ առից:

Եւ կուսանքն վասն բանի նորա չոգան իւրաքանչիւր ի սենեակն: Յայնժամ յարեաւ Ասանէթ, և եբաց

1. Գ. յաւելու [illegible]:
2. Գ. յաւելու և [illegible], և [illegible]:
3. Գ. [illegible]:
4. Ա և Գ. [illegible]
5. յԱ. չիք և սակաւ մի հանգիստ առից:

ղդուրսն լռելեանս, և չոգաւ յերկրորդ[1] սենեակն, ւր էին սապատք զարդուց նորա. և[2] բացեալ զարկղն՝ ւ եհան զազանելիսն սեաւս և թիւրաթուխս[3]. և այն ր հանդերձ նորա սգոյ, յորժամ մեռաւ եղբայրն նո-րա կրտսեր՝ զայն հանդերձն զգեցեալ էր Ասանէթ, և այնիւ սգայր զեղբայր իւր: Եւ ագաւ[4] Ասանէթ զսեաւ ազանելիս իւր, և եբեր ի սենեակս իւր. և եդեալ ղդրունսն փակեաց դռնափակովքն. և փութացաւ Ա-սանէթ, և եհան զհանդերձսն զարքունականսն և զբե-հեզսն և զընդելուզեալ ոսկւով ծիրանիսն, և զգօտին ակի, և զթագն գլխոյ, և զապարանջսն ի ձեռացն ւ յոտիցն. և առեալ ընկէց զամենայն ընդ պատու-հանն, որ հայէր ընդ հիւսիսի. և փութացաւ Ասա-նէթ և էառ նոյնպէս զչաստուածսն[5] ամենայն զոս-կեղէնս և զարծաթեղէնս, որոց ոչ գոյր[6] թիւ համա-րոյ, ընկէց ընդ պատուհանն ի վերնատանէն[7]. և առ ընթրիսն իւր զարքունականսն Ասանէթ զհացն և ձուկն և զմիս երնջոցն, և զամենայն ողջակէզս չաս-տուածոցն իւրոց, և զկահ գինւոյն՝ յորում ողջա-կէզն առնէր, և ընկէց զնա ընդ պատուհանն. և ետ զամենայն կերակուր շանց օտարաց. վասն զի ասաց Ասանէթ. Մի՛ գուցէ կերիցեն շունք իմ յընթրեաց[8] և յողջակիզացն գառանց կառոց, այլ կերիցեն շունք օտարաց: Եւ եղեւ յետ այսորիկ, և առ Ասանէթ[9] մաշկ քրձին, քակեաց զոր ելից մոխրով, և տար արկ զայն ի վայր. և ածաւ քուրձ ընդ մէջ իւր, և լու-

1. Ա. յերրորդ:
2. յԱ. պակասին բառք ինչ:
3. Ա. Թուրաթուխս՝ վասն զի այն:
4. Ա և Գ. ուղղագոյն զնեն և ամ Ասանէթ:
5. Ա. յաւելու Եգիպտոսի. յԳ. պակասի ոսկեղէն և արծաթե-ղէն:
6. Ա. ոչ գոյր համար. Գ. որոց ոչ էր համար:
7. Ա. յաւելու ի վայր:
8. Ա. յընթրեաց և յողջակիզաց կոյսն՝ զի մի՛ ողծիցեն յայսմ-հետէ՝ այլ կերիցեն շունք օ-տարաց:
9. Ա. Ասանէթ զպատրյանս զոր ի նոյ մոխրով, և արկ ի վերայ յատա-կի գետնոյ տանն, և հանեալ զմաղձ իւրն և եած ընդ մէջն, և հանեալ զհերսն:

ծեալ զհիւսեակս հերացն, և արկ ի վերայ գլ
խոյ[1] զմոխիրն ի մէջ գետնոյն, և բախեաց ձե
զկուրծսն, և ելաց լալիւն մեծ[2] դառնապէս զգ
ամենայն կոծելով մինչև ցաւաւօտն։ Եւ եղեւ
առաւօտանալն, և ետես Ասանէթ զմոխիրն կաւա
յարտասուացն՝ որ ի վերայ տանն յատակին։ Եւ
ձեալ անկաւ[3] ի վերայ երեսաց իւրոց մինչև յ
կոյն մերձ ի հաշել արեւուն. և այսպէս արար
նէթ մինչև յեօթներորդ օրն. այլ չարչարէր և
ռապեցուցանէր զանձն իւր յեօթն աւուրսն, հւ
եկեր և ջուր ոչ արբ։ Յաւուրն ութերորդի ընդ առ
տանալն յորժամ սկսաւ ճանչիւն հաւուցն լինել, և
ջիւն շանց ի ճանապարհորդսն, համբարձեալ զ
իւր ի վեր, վասն զի էին կթուցեալ և լուծեալ
դամք իւր առ կարօտութեան կերակրոցն եօթն աւո
և անկեալ[4] ի ծունկսն՝ եդ զձեռն ի վերայ գետ
ի վայր ունելով զգլուխն. և էր հեր գլխոյն լու
և փթթեալ ի սաստկութենէ մոխրոյն. և ձեռն կց
Ասանէթ աշխարէր զգլուխ իւր, և կոծէր զկ
իւր, յոգւոց հանէր մեծապէս և հառաչէր, զհեր գ
իւր ճողէր, և մոխիր ի վերայ արկանէր։ Եւ
պէս աշխատեցաւ Ասանէթ և նեղսարտեցաւ և
րացաւ ի զօրութենէ իւրմէ. և դարձաւ յորմն
և նստաւ ի վերայ պատուհանին որ հայէր յարեւ
և զգլուխն եդ ի գոգ իւր, և կցեաց զձեռն ի

1. Ա. իւրոյ և ցանեաց (Գ. ցրնդեաց) զմոխիրն ընդ մէջ գետնոյն։

2. Ա. մեծ. և այնպէս առնէր Ասանէթ զգիշերն ամենայն։ Եւ յաւուրն եօթներորդի յորժամ առաւօտ եղև և սկսաւ ճչուած (Գ. ճռճեան) հաւուցն լինել, համբարձեալ զաչս ի վեր։

3. Ա. խոնարհեալ (Գ. եւս խոնարհեալ) ի ծունկս իւր, յոգւոց հանէ մեծապէս, և զհեր գլխոյն իւր ճողէր և մոխիր ի վերայ ի
կանէր։ Եւ աշխատեցա
նէթ։

4. Գ. յաւելու ի վերայ
տանն։

5. Գ. [illegible]

6. Ա. ընդ յարկանելը, և
իւր եդ ի գոգ իւր, և ի
դեալ էին։

-նկացն իւր. և խօսք ամենեւին հատեալ էին ի բե-
րանոյ նորա, և ոչ եբաց Ասանէթ զբերան իւր
րօթն[1] օր ի նեղութեան իւրում. և ասաց Ասանէթ
ի սրտի իւրում, թէ Զի՞նչ գործեցից, կամ զո՞ արա-
րից ապաւէն, կամ յո՞ երթայց կոյս որբ և անօք[2].
Թողեալ ատեցեալ ամենեցուն զիս՝ ի հօր իմոյ ատեցեալ
եղէ. վասն զի ես ատեցի զաստուածսն նոցա, զոր կո-
տուրի զնոսա, և կոխումն արարի ամենայն մարդկան,
և վասն այսորիկ ատեցին[3] զիս հայր և մայր իմ և
ամենայն ազգականքն իմ. և ասաց հայրն իմ. Ոչ եւս
ոչեսցի մեզ դուստր Ասանէթ, վասն զի կործոյս զչաս-
տուածսն մեր զօսկեղէնս և զարծաթեղէնս. և ահա ա-
տելի եղէ ամենայն մարդկան, վասն զի ամբարտաւա-
նեցի ես զամենայն մարդովք և զամենեքումբք[4] որոց
խօսէին զիս. և այժմ յայս նեղութեանս իմում ատելի
եղէ ամենեցունց. և ուրախ եղէ ընդ նեղութիւնս
իմ: Զայս միայն խորհէր, և[5] ասէր. Տէր Աստուած
բարձրեալդ Յովսեփայ, որ ատես զամենեսեան որ պաշ-
տեն զկուռս մեռեալս և համերս և անշունչս, վասն զի
դու ես Աստուած վրէժխնդիր և ահաւոր ի վերայ
աստուածոց օտարաց:

Յաղագս այսորիկ և զիս ատեաց[6] Աստուած. զի ես
պաշտեցի զկուռսն անմռունչս և համերս և անշունչս, և
երկրպագեցի զնոսա և[7] կերայ ի զոհից նոցա, և բերան
իմ պղծեցաւ ի սեղանոյն[8], և ոչ ունիմ իշխանութիւն
կարդալ առ Աստուած երկնից[9] և առ բարձրեալ փրկ-
չին Յովսեփայ. վասն զի ապականեցաւ անձն իմ ի
զոհից կռոցն և ողջակիզաց նոցա. և արդ լուայ յո-
թանց՝ զի Աստուածն ճշմարիտ է Եբրայեցւոցն, և Աս-

1. Ա. զեօթն օր և ասաց ի սրտի իւրում:
2. Ա. ամենեքին ատեցին զիս... ա- տելի:
3. Ա. ատէ:
4. Ա. զամենեքեամբք որ խօսէին ընդ իս:
5. Ա. և յետ այսորիկ:
6. Ա. ատեցեր:
7. Ա. յաւելու և կերայ զհաց նոցա:
8. Ա. ի զոհից նոցա:
9. Ա. երկնի և երկրի:

տուած կենդանեաց է, Աստուած ողորմած, երկայնամիտ է և բազումողորմ[1], և ոչ համարի մարդոյ[2] զմեղս. համբերէ ապաշխարողի, և ոչ յանդիմանէ զմարդ ի ժամանակի նեղութեան իւրոյ։ Եւ արդ համարձակեցայց և դարձայց առ նա, ապաւէն արարից զնա, և խոստովան եղէց նմա զամենայն մեղս իմ, և հեղից զպաղատանս իմ առաջի նորա, և ողորմեսցի ինձ։ Ո՛ գիտէ եթէ հայի ի տառապանս իմ[3], թերևս հայեսցի յամայութիւնս և գթասցի յիս։ Ո՛ գիտէ[4] եթէ տեսցէ զողբումն իմ, և օգնեսցէ ինձ. վասն զի նա է հայր որբոց և օգնական նեղելոց. համարձակեցայց և աղաղակեցից առ նա, զի թերևս թողութիւն արասցէ ինձ։

Եւ յարեաւ Ասանէթ յորմոյն յոր[5] նստէրն, և դարձաւ ի պատուհանն որ հայէր ընդ արևելս. և կանգնեցաւ ի ծունգսն իւր, և համբարձեալ զձեռս իւր յերկինս, և երկեաւ Ասանէթ բանալ զբերան իւր յերկինս և ասել զանունն Աստուծոյ։ Դարձաւ անդրէն յորմն կոյս և նստաւ, և եհար ձեռամբ[6] զկուրծս իւր և զգլուխն բազում անգամ, և խօսէր ի սրտի իւրում, զբերանն ոչ բանալով, և ասէր. Ո՛վ տառապեալս որբ և ամայացեալս. բերան իմ ի զոհից կռոցն պղծեալ է յօրհնելոյ զաստուածսն Եգիպտացւոց. և այժմ արտասուօք իմովք այսու և մոխրովք չարչարեցից զմարմին իմ. սակայն և այժմ ոչ իշխեմ բանալ զբերան իմ, և օրհնել զանուն քո սուրբ և ահաւոր. մի՛ գուցէ բարկասցի ինձ Աստուած վասն կարդալոյ զանուն նորա սուրբ։ Արդ զի՞նչ գործեցից ես թշուառականս։ համարձակեցայց և բացից զբերան իմ առ նա, և եթէ սրտմտեալ ընթադրեսցէ զիս՝ կարող է դարձեալ

1. Ա. յաւելու և համբերող։
2. Ա և Գ. ապաշխարողի. և ոչ յանդիմանէ։
3. Ա. իմ և ողորմեսցի ինձ, թերևս հայեսցի յամաստութիւնս իմ և գթասցի։
4. Ա. ՞ գիտէ զիմ զողորմութիւնս և օգնեսցի։
5. Ա. յորժամ. Բն. որ։
6. Ա. զկրծանն իւր յետոյ մեզ իւր և ասէ. Արդ զի՞նչ գործեցից։

բժշկել զիս։ Եթէ[1] խրատեսցէ զիս տանջանօք, կարող է կրկին[2] մխիթարել զիս, և ի խրատելն դարձեալ նորոգեսցէ զիս ողորմութեամբն իւրով։ Եթէ տրտմեսցի[3] վասն մեղաց իմոց, հաշտեսցի ընդ իս, և թողցէ զամենայն մեղս իմ։ Արդ համարձակեցայց և բացից զբերան իմ առ նա, թերևս ողորմեսցի ինձ և թողցէ զմեղս իմ[4]։

Եւ յարեաւ Ասանէթ յորմոյ անտի, և կանգնեցաւ ի ծունգս իւր, և համբարձեալ զձեռս իւր յարևելս՝ հայեցաւ յերկինս, եբաց զբերան իւր առ Աստուած, և ասէ. Տէր Աստուած յաւիտեանց[5], որ ստեղծեր զամենայն և կենդանացուցեր[6], կենդանութիւն ամենայն արարածոց քոց. որ հաներ զաներևոյթս ի լոյս[7]. որ ստեղծեր զարարածս քո զերևելիս յաներևութից և յոչէից[8]։ Որ բարձրացուցեր զերկինս և հիմնեցուցեր զնա ի վերայ հողմոց. որ հաստատեցեր զերկիրս ի վերայ ջուրց սուրբ քարամբք քով։ Որ հեղեր[9] քարինս մեծամեծս ի վերայ ջուրց. քարինք ոչ ընկղմին, այլ են իբրև զտերև կաղնոյ ի վերայ ջուրց. և են քարինքն կենդանի, և ձայնի քում լսեն, Տէր։ Վասն զի դու, Տէր, կենդանարար ես ամենայն արարածոց քոց. ի քեզ ապաւինիմ, Տէր, և առ քեզ սփռեմ ըղպաղատանս իմ, և քեզ[10] յայտնեցից զանօրէնութիւնս իմ։ Խնայեա յիս, Տէր, զի մեղայ և յանցեայ առաջի քո, Տէր. բազմապատիկ մեղայ և անօրինեցայ, ամբարշտեցայ, և խօսեցայ բանս չար և անձառելի. պղծեցաւ բերան իմ ի զոհից կռոցն. յաղագս որոյ բազում անգամ պղծեցայ անգիտութեամբ, և պաշ-

1. Ա. յաւելու դարձեալ։
2. Ա. դարձեալ նորոգեսցէ զիս ողորմութեամբ իւրով։
3. Ա. տրտմեսցի (Գ. եւ տրտմեսցի) ընդ իս, դարձեալ հաշտեսցի և թողցէ զմեղս իմ։ Արդ։
4. Ա և Գ. ինձ։
5. յԱ. չիք յաւիտեանց։
6. Ա. և Գ. որ ետուր շունչ կենդանութեան։
7. Յաւելու բառս լոյս ըստ Ա. օրինակին։
8. Ա. յոչինչ։
9. Ա և Գ. եդեր... ի վերայ անդընդոց ջրոց։
10. Բն. ձեռ։

տեցի զկուռս մեռեալս և զհամերս։ Եւ արդ ոչ եմ արժանի բանալ զբերան իմ վասն բազում մեղաց իմոց։ Ես Ասանէթ դուստր Պետափրէ քրմին[1] դշխոյ որ եմ, էի երբեմն դժոխք և ամբարտաւան և ամբարտաւան, և բարձրացեալ մեծութեամբ քան զամենայն մարդ. այժմ որբ եղէ և ամայի[2], թողեալ յամենեցունց. առ քեզ ակն ունիմ[3], Տէր, և առ քեզ աղաղակեմ. դու փրկեա զիս յառաջ քան զհասանելն հալածանաց իմոց։ Զի որպէս մանուկ տղայ զարհուրեալ[4] փախչի առ հայրն իւր, և հայրն ձգեալ զձեռն առցէ[5] զնա ի գետնոյն. և մանուկն պնդէ ձեռամբն զպարանոցաւ հօրն, և ապահովասցի յահէն[6] և հանգչիցի ի գիրկս հօրն իւրոյ. այնպէս և ես խուսեալ եմ յամենայն կողմանց, և առ քեզ, Տէր և հայրդ իմ, փախստական անկանիմ. արդ դու ձգեա զձեռն քո, և յափշտակեա զիս յերկրէ։ Զի ահաւասիկ վայրենի և ծերացեալ առիւծն փախստական[7] առնէ զիս. զի նա է հայր աստուածոցն Եգիպտացւոցն. վասն զի որդի[8] առիւծի են ամենայն կուռք հեթանոսաց. և ես ընկեցի զամենայն աստուածսն ի բաց և կորուսի զնոսա, և առիւծն հայրն նոցա սրտմտեալ հալածէ զիս։ Ապրեցո զիս, Տէր, ի ձեռաց նորա, և ի բերանոյ նորա փրկեա զիս. մի՛ գուցէ յափշտակէ զիս և գէշ գէշ պատառէ և արկցէ[9] ի հուր հնոցի, և հուրն արկցէ ի մէջ մրրկի. մրրիկն շաղապատէ զինեւ, և խաւարեցուցանէ զիս, և արկանէ զիս յանդունդս խորոց, և կլցէ զիս կէտն[10] մեծ, որ ի սկզբանէ էր, և կորեայց[11] յաւիտեանս ժամանակաց։ Փրկեա զիս, Տէր, յառաջ

1. Ա. քրմին որ ողխօսէի երբեմն և ամբարտաւանէի և ամբարտաւան էի և բարձրացեալ մեծութեամբ. Գ. որ եմ և էի երբեմն դժոխք։
2. Ա. ադելլի։
3. Ա. անկանիմ։
4. Ա. յորժամ (Գ. և ա յորժամ), զարհուրել։
5. Ա. առեալ զնա յափշտակեալ ի գետնոյ։
6. Ա. յերկիւղէն։
7. Ա. հալածական։
8. Ա. որդիք առիւծուացն և ընկեցի զամենայն։
9. Ա. արկանէ զիս ի հուր հնոցի, և հնոցն։
10. Ա. գէտն մեծ։
11. Ա. կորեաւ։

ան զգալն այսր ամենայնի ի վերայ իմ. փրկեա և ամ-
սցո[1] զօտարացեալս, վասն զի մայր իմ և հայր իմ ուրա-
ան զիս և ատացին. Ոչ է մեր[2] դուստր Ասանէթ, վասն
ի կործյս զաստուածսն մեր և ատեաց զնոսա[3]. յա-
սգս այսորիկ ատելի եղէ նոցա և[4] ամայի և որբ.
լոյս ի քեզ եղէ, Տէր, և ոչ այլ ոք. յայլ ոք ոչ ապա-
ինիմ, բայց միայն ի քեզ, Տէր. զի դու ես հայր որբոց
հալածելոց և օգնական նեղելոց: Ողորմեա ինձ
ուսանիս և տառապելոյս և որբոյս. զի դու ես բարի
քաղցր հայր և մայր: Ո՞ հայր է իբրև զքեզ, Տէր[5],
աղցր, և ո՞ր մայր գթած որպէս զքեզ Տէր. և ո՞վ
րկայնամիտ մեղուցելոց իբրև զքեզ: Ահա զամե-
այն[6] զոր ետ ինձ հայր իմ Պետափրէս[7] ի ժառանգու-
թիւն անցաւոր և աժամանակեայ, ոչ են անապական
յաւիտենական, իսկ քո ամենայն ինչ շնորհք և ժա-
անգութիւն անանց է և անվաղճան: Եւ այժմ հա-
եաց յիս ի տառապեալս և ողորմեա ինձ:

Ահաւասիկ փախստական եղէ յամենեցունց, և զքեզ,
Տէր, ապաւէն ինձ արարի. ահաւասիկ զամենայն
արութիւնս երկրի թողի, և զքեզ յոյս ինձ արարի:
Եւ արդ խորգով և մոխրով աշխարհեմ[8] առ քեզ, և լամ
մեղս իմ. ահա ի բաց մերժեցի յինէն զթագաւորական
զգեստն[9], զբեհեզ, զգնդապաճոյծն և զոսկեհուռն, և
զգեցայ զհանդերձ սգոյ. ահա լուծի զգօտի իմ ոսկեղէն,
. զգեցայ քուրձ. ահա զթագն իմ և զպսակն իմ ընկե-
ի ի գլխոյ իմմէ, և զգեցայ[10] զմոխիր. ահաւասիկ

1. Ա. և Գ. ապրեցո զօտարացեալս, վասն զի հայր իմ և մայր իմ:
2. Բն. մեզ:
3. Բն. զնոսա:
4. Ա. ես որբ, և յոյս իմ է ի քեզ է. և այլոց ուրեք ոչ է ինձ, Տէր, և ոչ զոք ապաւէն ունիմ... զքեզ...
5. յԱ. տող մի պակասէ. և ո՞վ:
6. Ա. յաւելու ժառանգութիւնս:
7. Ա. Պետափրէս՝ անցաւոր է և աժամանակեայ (Գ. ժամանակեայ է) իսկ քո ամենայն շնորհ-քդ ժառանգութիւն անապական են և յաւիտենական: Եւ այժմ:
8. Ա. աղաղակեմ զմեղս իմ. ահա
9. Ա. զգեստն և զոսկեհուռն իմ, և զգեցայ սեաւ զի իմ են սգաւոր:
10. Ա. և փոխանակ այնր մոխրով զգեցայ:

յատակ տան իմոյ յօրինեալքս էին կճայովք[1] և պայ
ծառ ծիրանովք. և որպէս յառաջագոյն զանոյշս ցա
նէի, և պայծառ կտաւովք մաքրէի. այժմ ցանեցա
արտասուօք իմովք, և ընդ մոխրելն յամօթ եղեն. ա
հաւասիկ յարտասուաց իմոց մոխիրս կաւացաւ[2] և
ղեւ իբրեւ կաւս գուեհաց և ճանապարհաց: Ահաւասի
յարտասուաց իմոց զընթրիսն իմ արքունական եօ
կերակուր չանց ստարաց, և ես զեօթն[3] գիշեր հ
ոչինչ ճաշակեցի, և ջուր ոչ արբի. բերան իմ ցամաք
ցաւ զօրէն[4] թմբկի, և լեզու իմ եղեւ որպէս զեղջիւ
չոր, և շրթունք իմ իբրեւ զխեցի. դէմք իմ ի վայր
նարհեցան, և աչք իմ այտուցեալ ամօթալից ի սա
տիկ արտասուաց իմոց[5], և նուազեցաւ յինէն ամե
նայն զօրութիւն իմ. արդ ես զչաստուածսն զոր յ
առաջագոյն պաշտէի անգիտութեամբ, և այժմ ծանե
զի էին կուռք անմռունչք և խուլք, և ետու զնոս
ի կոխան, և գողք յափշտակեցին զոսկին[6] և զար
ծաթն, և կորուսի զամենայն յերեսաց իմոց: Վա
զի ի քեզ ապաւինեցայ, Տէր աստուած Յովսեփա
դու ապրեցո զիս, Տէր, և թողութիւն արա ինձ. զի
վասն մեղաց անգիտութեամբ և տխմարութեամբ մ
լորեցայ, և խօսեցայ բանս հայհոյութեան վասն տեա
իմոյ[8] Յովսեփայ, զի ոչ գիտէի թէ իբրեւ զօր
սիրելի իցէ քո: Այլ[9] խօսեցան ընդ իս մարդ
իբրեւ պարզմտութեամբ, և ասացին թէ Յովսէփ ա

1. Ա. կենճեանք ծերանեալք և պայ ծառ. և զոր յառաջագոյն եւղ անոյշ (Գ. եւղն անոյշն) ցանեի, և մաքրեի կտաւօք պայծառա- նօք... արտասուօք իմ ընդ մոխ- րով յամօթ եղեն:
2. Ա. կատարած իբրև զճանապար- հաց փոշւոյ. Գ. կատարա- իբրև զկոյտս փոշւոյ և ճա- նապարհաց:
3. Ա և Գ. զեօթն օրն և զեօթն գիշեր:
4. Ա. իբրև զօրէն թմբկի (Թն. թմբրի)
5. Ա և Գ. լուայ և նուաղեաց յի- նէն ամենայն զօրութիւն իմ:
6. Ա. զամենայն ոսկեղէնն և ար- ծաթեղէնն:
7. Ա. զի մեղայ անգիտութեամբ տխմարութեամբ մոլորեցայ
8. Ա. մերոյ:
9. Ա. արդ:

ն է հովուի միոյ յերկրէն Քանանացւոց. և ես հա-
ստացի նոցա, մոլորեցայ և արհամարհեցի զնա, և
օսեցայ բանս չարութեամբ վասն նորա, և ոչ գի-
տէի թէ Յովսէփ իբրև զորդի սիրելի է քեզ. վասն
ո՞վ ոք ի մարդկանէ ծնցի այսպիսի գեղեցկութիւն,
այսքան իմաստութիւն և առաքինութիւն: Պահեա
ա, Տէր, իմաստութեամբ շնորհի քո. և զիս յանձն
րաս նմա իբրև զաղախին և սպասաւոր. զի և ես ար-
ց զանկողինս նորա և լուացից զոտս նորա, և ե-
ց նմա որպէս զաղախին:

Եւ եղև իբրև դադարեաց Ասանէթ ի խօսելոյ[1]
ռ Տէր, և արուսեակն ծագեաց. և զաստղն տեսեալ
սանեթայ՝ ուրախ եղև և ասաց. Լուաւ[2] Տէր ար-
նօք աղօթից իմոց, զի աւետաւորիկ աստղն Աստուծոյ,
էր հրեշտակ և քարոզ՝ ծագեաց: Եւ դարձեալ տե-
սանէր Ասանէթ, և ահա մերձ յերկինսն[3] պատառեալ
ածանէր երկինք, և երևեցաւ լոյսն մեծ և անճա-
ռելի. և[4] զայս տեսեալ՝ անկաւ ի վերայ երեսաց իւ-
ց ի վերայ մոխրոյն: Եւ իջեալ յերկնից ի նմանու-
թիւն առն, և կացեալ հանդէպ գլխոյն Ասանեթայ,
կոչեաց և ասէ. Ասանէթ: Եւ նա ասէ. Ո՞վ է որ
կոչեացն զիս. զի դուռք սենեկիս փակեալ են, և աշ-
տարակս բարձր է. զիա՞րդ արդեօք[5] մարթեաց մտա-
նել ի սենեակս իմ: Եւ կոչեաց երկրորդ անգամ այրն
նա և ասէ. Ասանէթ: Եւ Ասանէթ ասէ[6]. Եթէ ո՞վ
դու՝ պատմեա ինձ: Եւ ասէ այրն. Ես եմ իշխանն
արայելի[7], և զօրաւոր քան զամենայն սուրբս բարձրե-
ան. արի կանգնեաց և կաց ի վերայ ոտից քոց, և խօսե-

1. Ա. խոստովանելոյ զՏէր:
2. Ա. Լուաւ ինչ Տէր և աղօթից.. աստղն Աստուծոյ է և քարոզ ծագեաց.
3. Ա. յորժամ [illegible] է պատառեալ լուսոյն. Գ. լուսոյն մեծի:
4. Ա. եղև Ասանէթ և անկաւ ի վերայ մոխրոյն..
5. Ա. ով էորոց:
6. Ա և Գ. յաւելուն ահա[illegible] եմ տէր:
7. Ա. Տեառն (Գ. ևս) և զօրաւոր ամենայն զօրութեամբ (Գ. զօրութեան բարձրելոյն):

ցայց ընդ քեզ զբանս իմ։ Եւ ամբարձ Ասանէթ զգլու
իւր և ետես. և ահա այրն էր ամենևին նման Յով
սեփայ՝ պատմուճանաւն և պսակաւն և թագաւորակ
գաւազանաւն. բայց դէմք նորա էին որպէս փայլակն
և աչք նորա որպէս ճառագայթս արեգական, և հ
գլխոյ նորա իբրեւ[1] զբոց, և ձեռք նորա որպէս եր
կաթ հրացեալ, և կայծակունք թօթափէին ի ձեռաց
յոտից նորա՝ իբրեւ յեռանդնացեալ հրոյ[2]. զոր տեսեա
Ասանեթայ՝ անկաւ ի վերայ երեսաց իւրոց յերկի
և երկեաւ երկիւղ մեծ, և զդողումն[3] հարան ամենա
անդամք ոսկերաց նորա։ Եւ այրն[4] ասէ ցնա. Քա
ջալերեաց, Ասանէթ, և մի երկնչիր. այլ արի կաց
վերայ ոտից քոց, և խօսեցայց ընդ քեզ զբանս ի
Եւ յարեաւ Ասանէթ, և եկաց ի վերայ ոտից իւրոց։ Ե
ասէ այրն. Երթ՝ և ի բաց հան զպատմուճանդ[5] քո զս
սեաւ և սգոյ՝ զոր զգեցար. խորգդ՝ որ զմիջովդ է ի բ
դիցես, և ի բաց թօթափեալ զմոխիրդ ի գլխոյ քո
մէ, և լուա զքեզ[6] ջրով կենդանութեան, և զգեց
զպատմուճանն աղէկն[7] և փառաւորեալն, և ած զգ
տի ոսկի՝ որ է կուսութեան քո. և եկ խօսեցայց ըն
քեզ զբանս իմ։ Եւ փութացաւ Ասանէթ, եմուտ յեր
կրորդ սենեակն իւր, ուր էին սապատք զարդու նոր
և բացեալ զարկղն՝ առ անտի զգեստս կտաւեայս
երեւելիս, որ ոչ էին երբեք չօչափեալք յումեք
և մերկացեալ յինքենէ զպատմուճանն սեաւ և սգոյ
և ի բաց եհան զխորգն ի միջոյն իւրմէ. և զգեց
զհանդերձսն զերեւելիս, և ածեալ զերկոսին գօտին
որ էին կուսութեան իւրոյ, զմինն ած ընդ մէջ իւր,
զմինն[8] ածաւ ի վերայ կրծոց իւրոց՝ հանդէպ ստեանցն

1. Ա. իբրեւ զերկաթ հրացեալ, և։
2. Ա. երկաթոյ. և տող մի պակասէ։
3. Ա. զդողք հարան ամենայն ոսկերք նորա։
4. Ա. ասէ այրն. քաջալերեաց, կաց ի վերայ։
5. Ա. զպատմուճանդ սգոյ և զխորգ ի միջոյ քումմէ ի բաց։
6. Ա. զերեսս քո։
7. Ա և Գ. նոր երեւելիս և փառաւորեալս. և չիք յԳ. մինչև փութացաւ։
8. Ա. միւսն։

ու փ բաց Թօթափեաց զմոխիրն ի գլխոյ իւրմէ, և ուաց զձեռս և զերեսս իւր, և առ զվարշամակ[1] կտա- եայ՝ նոր և պայծառ, և ծածկեաց զգլուխն իւր. եկն առ այրն յառաջին սենեակն, և եկաց առաջի նորա: ու ասէ ցնա այրն. Ի բաց առ զվարշամակդ ի գլխոյ ումմէ. ընդէ՞ր արարեր[2] զայդ այսօր. և դու կոյս ուրբ ես և պարկեշտ՝ մինչեւ ցայսօր ժամանակի. և լուխ քո է իբրեւ զառն երիտասարդի: Եւ եհան Ասա- նէթ զվարշամակն ի գլխոյ իւրմէ. և ասէ ցնա այրն. աջալերեաց, Ասանէթ, կոյսդ սուրբ. ահա լուայ բա- ից քոց խոստովանութեանն և աղօթիցդ[3]. ահա տե- ս զտառապանս եօթն աւուրց կարօտութեանց քոց. Հաւասիկ՝ ի մոխրոյ և յարտասուաց՝ կաւ սաստիկ եսանեմ ես առաջի աչաց իմոց. քաջալերեաց, Ասա- նէթ, կոյս սուրբ, ահա գրեալ է անուն[4] քո մատամբն ստուծոյ ի գիրն կենդանեաց յերկինս՝ ի սկզբանէ ելոցն, և յառաջ քան զբազմաց՝ գրեցաւ անուն քո նջինջ[5] յաւիտեանս յաւիտենից: Ահա յայսմ հետէ րոգեսցիս, վերստին կենդանասցիս[6], և կերիցես հաց օրհնութեան կենդանարար, և զբաժակ օրհնեալ նմահութեան արբցես, և օծմամբ անապականու- եամբ օծցիս[7]: Քաջալերեաց Ասանէթ, կոյս սուրբ. հա ետու զքեզ այսօր հարսն[8] Յովսեփայ յաւիտեանս մանակաց: Եւ անուն քո ոչ եւս կոչեսցի Ասանէթ, յլ կոչեսցի Քաղաք ապաւինի. վասն զի քեւ ապա- ինեսցին ազգք բազումք ի Տէր Աստուածն երկնից. - ընդ հովանեաւդ քո ծածկեսցին[9] յուսացեալք ի էր Աստուած, և ընդ պարսպաւդ քո պարսպեսցին[10]

1. Ա. վարշամակ նոր և երկեղէ, և ծած:
2. Ա. արկեր:
3. յԳ. առ մի պակասէ մինչև ահաստագեալ:
4. Ա և Գ. անուն քո յերկինս ի գիրն...
5. Ա. ող Ընթացս. Գ. մատամբն Աստուծոյ ող Ընթէ:
6. Ա. կենդանեացիս:
7. Բն. ծնցիս:
8. Ա. յաւելու յամանակութեան. Գ. և նա եղեւ ժեղ փեռայ:
9. Ա և Գ. յաւելուն ծաղկեալ [illegible]:
10. Ա. ամբառցին:

հնազանդեալք բարձրելոյն՝ անուամբ ապաշխարու-
թեան. որ հանէ[1] մերձ յերկինս, իբրեւ զսիրելի բար-
ձրելոյն առնէ զմարդն, որ զնա կատարեալ մտօք խըն-
դրեսցէ. զի նա է տուիչ[2] ամենայն պարգեւաց, և զօ-
րացուցիչ ամենայն կուսանաց, և խնդրէ զկուսութիւ-
և սիրէ յոյժ, և ի վերայ ձեռ ակն ածէ յոյժ յամե-
նայն ժամ, և զամենեսեան՝ որ եթէ ապաշխարեն՝ ա-
ինքն ի յարկն իւր ընդունի, և տեղի հանգստեա-
պատրաստէ նոցա յերկինս, և հանգուցանէ զամենայ-
ապաշխարողս. ընդ այցելութեամբ նորա եղիցին հա-
նապազ յաւիտեանս ժամանակաց, և նա խնայեսցէ
նոսա: Եւ ես աճապարիկ երթամ առ Յովսէփ, և խօ-
սեցայց ընդ նմա վասն քո զամենայն բանս իմ.
մտցէ[3] առ քեզ Յովսէփ այսօր, և ուրախ եղիցի վա-
քո, և սիրեսցէ զքեզ. և եղիցի քեզ ի փեսայութեան
և դու եղիցես նմա ի հարսնութեան յաւիտեանս: Ե-
արդ, լուր ինձ, Ասանէթ կոյսդ, և զգեցիր զպատմու-
ճան հարսնութեան քո, որ ի սկզբանէ պատրաստեա-
է քեզ. և ամենայն զարդուք կարգեալ[4] և պաճու-
ճեալ զքեզ իբրեւ հարսն բարի. և յարուցեալ գնա-
ցես ի պատահումն Յովսեփայ, վասն զի նա աՀա ա-
օր եկեսցէ առ քեզ:

Եւ եղեւ իբրեւ կատարեաց այրն զխօսսն, խնդա-
Ասանէթ ի խնդութիւն մեծ ի վերայ ամենայն բան-
նորա[6]. և անկեալ ի վերայ ոտից նորա՝ երկիր եպ-
նմա ի վերայ երեսաց, և ասէ. Օրհնեալ է Աստու-
բարձրեալն, որ առաքեաց զքեզ և փրկեաց[7] զիս
խաւարէս յայսմանէ, և վերածեաց ի հիմանց անդը-
դոց, և օրհնեալ է անուն քո յաւիտեան: Եւ ասա՝

1. Ա և Գ. վասն զի ապաշխարութեան հանէ:
2. Ա. փեսայաց ամենայն կատարմանց և սիրելի զկատարութեան յոյժ. և ի վերայ ան ածէ յամենայն ժամ. և զամենայնս ենէ զապաշխարութեամբ (Գ. զօրութեամբ) ապաշ… յերկինս ընդունի:
3. Ա. տեսցէ զքեզ և ուրախաս… և:
4. Ա. զարդարեա և պաճուճեա:
5. Ա. ցնծաց:
6. Ա. յաւելու զոր խօսեցաւ:
7. Ա. փրկել:
8. յԱ և յԳ. չիք և ասա:

՞նչ է անուն քո, ասէր. պատմեա ինձ, զի օրհնեցից եզ, տէր, յաւիտեանս ժամանակաց: Ասէ ցնա այրն. մ անունս յերկինս է՝ ի գիրն բարձրելոյն գրեալ է ուիտեանս ժամանակաց՝ մատամբն Աստուծոյ ի սկըզ-նէ գրելոցն՝ յառաջ քան զամենեցունց. վասն զի ես իշխան բարձրելոյն. և ամենայն անուանք՝ որ եթէ-եալ են ի գիրս բարձրելոյն, անգիտելի են, և րդոյ ոչ է լսելի և ոչ տեսանելի յայսմ աշխարհիս[1]. ն զի մեծ են անուանք նոցա և սքանչելի և գո-ւք յոյժ: Եւ Ասանէթ ասէ. Գտի շնորհս առաջի , և գիտեմ զամենայն բանս զոր խօսեցար ընդ իս[2]. յց սակայն խօսեցի աղախինն քո առաջի քո: Եւ նա է. խօսեաց: Եւ ասէ Ասանէթ. Աղաչեմ զքեզ, [3]: Եւ ընդ ասելն՝ մերձեցաւ ձեռն իւր ի ծունկս ա, և պաղատելով ասէր ցնա. Նի՛ստ[4] փոքր մի երայ տախտիս այսմիկ. վասն զի տախտս այս մա-ր է և առանց պղծութեան, և այր և կին ոչ երբեք եալ[5] է ի վերայ սորա. և եդից առաջի քո սե-ն, և բերից յշտեմարանաց հաց և գինի հին և ա-, և դու կերիցես և արբցես, և ապա[6] երթիցես նապարհն քո: Եւ ասէ ցնա այրն. Փութացիր և [7]: Եւ փութացաւ Ասանէթ, և եբեր առաջի նո-սեղան ունայն. և ինքն գնացեալ յերեսաց նորա, ամէր մտանել յշտեմարանս իւր, զի բերցէ և դնի-առաջի նորա հաց: Ասէ ցնա. Բե՛ր ինձ խորիսխ ղու[8]. և զտեղի առեալ Ասանէթ՝ տրտմեցաւ. վասն ոչ ունէր խորիսխ մեղու[9] յշտեմարանս իւր: Ասէ ն. Ընդէ՞ր զտեղի առեալ տրտմեցար: Եւ ասէ Ասա-թ. Առաքեցից մանուկ արտաքոյ քաղաքիս, վասն

. յաւելու և Թողաթեան եղև:
. վասն իմ:
. և չգիտացչէան իւր և ծը-ծնցոյց ի չեան նորա և ի ծածկոյն և պաղ..:
. հանգիր:
. նորդաս:
Ա. յետ ողջունի:
7. Ա. որա: Եւ փութացաւ Ասա-նէթ, և եդ դադարէ զսեղանն առաջի նորա:
8. Ա և Գ. ծեղուաց:
9. Ա. ծեղուաց զի դէզե առաջի նորա: Եւ ասէ ցնա այրն. Ըն-դէ՞ր չանգնեցար և առեր զսեղն:

զի մերձ է այսր ժառանգութիւնս մեր, և բերց[...]
անտի վաղվաղակի խորհուրդ մեղուաց, և եդից առ[...]
ջի քո, տէր իմ։ Ասէ ցնա այրն. Գնացեալ մտ[...]
յշտեմարանս քո, և գտցես խորհուրդ մեղուաց ի վ[...]
րայ սեղանոյն, զոր առեալ բերցես այսր։ Ասէ այ[...]
Ե՛րթ մուտ, և գտցես։ Եւ եմուտ Ասանէթ յշտեմ[...]
րանս իւր, և եգիտ մաղս[2] մեղուաց՝ որ կայր ի վ[...]
րայ սեղանոյն. և էր մաղն[3] մեծ և սպիտակ իբ[...]
գձիւն, լի մեղու. և էր մաղն որպէս զցօղ երկնից[...]
հոտ նորա որպէս զհոտ կենդանութեան։ Եւ զարմ[...]
ցաւ Ասանէթ, և զմտաւ ածէր թէ[4] ի բերանոյ առ[...]
այնորիկ ել արդեօք խորհուրդս այս. վասն զի հոտ [...]
րա իբրեւ զհոտ ռանս[5] այնորիկ է։ Եւ առ Ասան[...]
զխորիսխն զայն[6], և եբեր առաջի առն, և եդ ի [...]
րայ ունայն սեղանոյն, զոր պատրաստեաց յառաջ[...]
գոյն։ Ասէ ցնա այրն. Զի՞ է՝ որ ասացեր թէ ոչ գոյ [...]
րիսխ մեղու յշտեմարանս իմ. և արդ[7] բերաւ առա[...]
խորհուրդ մեղուաց յշտեմարանացդ սքանչելապէս։ [...]
զարհուրեալ Ասանէթ ասաց. Ես, տէր, խորիսխ [...]
ղուաց ոչ ունէի յշտեմարանս իմ. բայց դու խօսեցար[...]
եղեւ. գուցէ ի բերանոյ քումմէ ելեալ է սա. վասն[...]
հոտ սորա իբրեւ զհոտ բերանոյ քո է[8]։ Եւ ժպտեալ [...]
զմտաւ ածէր զԱսանեթայ զգաստութիւնն։ Եւ կոչ[...]
զնա առ ինքն, և մերձեցոյց զաջ[9] ձեռն ի գլուխ նո[...]

1. Ա. բերցէ խորհուրդ մեղուացս։ Եւ ասէ այրն. Ահաւասիկ կայ ի վերայ սեղանոյ յշտեմարանիդ քո, առեալ բերցես այսր, և ասէ (Գ. հա) Ասանէթ խորհուրդ մեղուաց յշտեմարանս իմ ոչ գոյ. և ասէ այրն երթ...
2. Ա. ծաղու մեղուաց որ կայր։
3. Ա. ծաղն... լի մեղրով, և էր ծաղն.
4. Ա. վասն ասելոյ առանձն այնորիկ ասացի արդեօք լեալ խորհուրդս այս, վասն զի։
5. Ա. բերանոյ առանձն այնորիկ[...]
6. Ա. զայն և եդ ի վերայ ա[...] սեղանոյն՝ զոր եդ յառաջ[...] առաջի նորա։
7. Ա. և արդ առաք՞ է խոր[...] մեղուաց յշտեմարանս քո [...] ինէ։
8. Ա. յաւելու [illegible]։
9. Ա. զաջոյ ձեռն և եդ ի վ[...] գլխոյ նորա։

երկեաւ Ասանէթ ի ձեռանէ առն. վասն զի կայծակունք թափէին[1] ի բերանոյ նորա իբրեւ յերկաթոյ եռանդնացելոյ։ Եւ զարհուրեալ Ասանէթ՝ պըռնացեալ հայէր ի ձեռս առն։ Եւ[2] տեսեալ՝ ժպտելով ասէր. Երանի է քեզ, Ասանէթ, զի յայտնեցան քեզ ծածուկքն[3] Աստուծոյ բարձրելոյն. և երանի ամենեցուն՝ որ կացցեն առաջի Տեառն ապաշխարութեամբ, զի ի խորսխոյս յայսմանէ կերիցեն. վասն զի այս խորիսխ շունչ կենդանութեան է. և զսա գործեցին մեղուք դրախտին փափկութեան Աստուծոյ, այսինքն ի ցօղոյ վարդենեաց[4] կենդանութեան Աստուծոյ. վասն զի ամենայն հրեշտակքն Աստուծոյ ի սմանէ ճաշակեսցեն. ամենայն որդիք բարձրելոյն, և ընտիրքն Աստուծոյ[5]. զի խորիսխ կենդանութեան է սա. և ամենայն ոք որ կերիցէ ի սմանէ՝ ոչ մեռցի յաւիտեանս ժամանակաց։ Եւ ձգեաց այրն զձեռն և եբեկ[6] ի խորսխէն մասն ոչ սակաւ, և կերաւ ինքն՝ և զմնացորդսն որ ի ձեռին՝ եդ ի բերան իմ, և ասէ ցիս. Ասանէթ, ահա կերեր հաց կենաց, և արբեր բաժակ անմահութեան, և օծար օծմամբ անապականութեան. ահա յայսմհետէ մարմինք քո բողբոջեսցեն որպէս ծաղիկ, և հանցէ կրկին որպէս[7] յերկրէ բարձրելոյն. և ոսկերք քո պարարտասցին որպէս զմայրս[8] փափկութեան դրախտին Աստուծոյ, և զօրութիւնք անաշխատք պարփակեսցեն զքեզ, մանկութիւն քո զծերութիւն ոչ տեսցէ, և գեղեցկութիւնդ քո յաւիտեան ոչ պակասեսցի. և եղիցիս քաղաք ամենեցուն որպէս պարսպեալ յանուն Տեառն Աստուծոյ Թագաւորին յաւիտենից։ Եւ[9] ձգեաց այրն զձեռն իւր, և մերձեցոյց ի խորիսխն յոր բեկեալն

1. Ա. [illegible] հրաշալի թափէին ի [illegible] նորա։
2. Ա. և այրն [illegible]։ Գ. և [illegible]։
3. Ա. [illegible]։
4. Ա. [illegible]։
5. Ա. յաւելու ի սմանէ [illegible]։
6. Ա. [illegible] մասն [illegible] և [illegible] ինքն և զմնացորդսն։
7. Ա և Գ. [illegible] կենդանի յերկրէ։
8. Ա. զմայրս։
9. Ա. և յետ այսորիկ [illegible]։

էր. և անդէն կատարեալ առլցաւ[1] բեկուածն և ան
դէն եղեւ ողջ որպէս[2] էր յառաջագոյն։ Եւ դարձեա
ձգեաց զաջ ձեռն իւր և զմատն իւր ցուցական, և մեր
ձեցոյց յեզր խորանին՝ որ հայէր ընդ յարեւելս,
ած[3] ի կողմն՝ որ հայէր ընդ յարեւմուտս. և եղ
տեսիլ մատին նորա որպէս[4] զարիւն. և ձգեաց եր
կրորդ անգամ զձեռն իւր, և մերձեցոյց յեզր[5] խորը
խին՝ որ հայէր ընդ հիւսիսի, և ած ի կողմն՝ որ հա
յէր[6] ընդ հարաւ. և տեսիլ մատին նորա[7] որպէս զա
րիւն։

Եւ Ասանէթ հայէր[8] և տեսանէր՝ զոր ինչ առնէ
այրն։ Եւ ասէ այրն ցխորիսխ մեղուաց. Ե՛կ այսր։ Ե
համբարձան մեղուքն յարկաց մաղին[9] այնորիկ, բիւ
բիւրոց և հազարք հազարաց մեղուք՝ սպիտակ իբր
զձիւն, լի մեղու. և թեւք նոցա ծիրանիք երկայն
գոյնք որպէս զորդան կարմիր, և ոմանց որպէս[10] բե
հեզս ընդելուզեալս, և զօրէն ոսկեղէն պսակաց շու
րգլխովն իւրեանց. պատուական էին կերպարանօք,
խայթոցք էին նոցա սուրք, և ոչ ումեք վնասէին.
շուրջ պատեալ ամենայն մեղուքն զԱսանեթաւ՝ յոտից
մինչեւ ցգլուխն։ Եւ այս[11] մեղուքս ընտիրք էին և մե
ծամեծք որպէս զթագուհիք. և յարուցեալ յերես
մազին՝ պատեցան զերեսօքն Ասանեթայ, և գործեց
զերեսօքն նորա գործ. և շրթունք խորսխին[12] էր
բերանն Ասանեթայ։ Եւ ասէ այրն ցմեղուսն. Երթա
իւրաքանչիւր ի տեղի իւր։ Եւ յարեան ամենայ
մեղուքն և թռեան, և չոգան հանդէպ երկնից[13] և ա

1. Ա. եղէց։
2. Ա. էին եւ յառաջինն։
3. Ա. ձախմէ ի կողմն որ էր յա-րեւմտից։
4. Ա. և հետն էին զարեան։
5. Ա. զմատն ի կողմն հիւսիսոյ։
6. Ա. էր։
7. Ա. յաւելու և հետն եղև։
8. Ա. կայր հետացեալ։
9. Ա. յամենայն ուրեք ծաղ... փոխանակ մաղէ։
10. Ա. որպէս ընդելուզեալս, ... նոյ ասկեղէն։
11. Ա. այլ։
12. Ա. խորանաց էին։
13. Ա. երկրէն և որք կաց... նորել ի վերայ. սոսա։

ամեցան վնասել Ասանեթայ՝ անկան և մեռան: Եւ
գեալ այրն զգաւազանն ի մեղուսն մեռեալ, և ասէ
նոսա. Արիք և դուք երթայք ի տեղիս[1]: Եւ յարեան
մեռեալ մեղուքն, և չոգան համօրէն ապարանիցն Ասա-
նեթայ, և նստան ի վերայ ծառոց պտղաբերաց: Եւ
ասէ այրն ցԱսանէթ. Իմացա՞ր զտեսիլդ: Եւ նա ասէ.
Իմացայ[2]: Եւ ասէ այրն. Այսպէս եղիցի քեզ բանք
իմ այսօր: Եւ ձգեաց երրորդ անգամ զաջ ձեռն իւր,
հասոյց ի հատուածս խորսխին, և եկեր զխորիսխն.
սեղանն ոչ վնասեցաւ, և հոտ հատուածի խորսխին՝
լից զսենեակն. և էր հոտ յոյժ հեշտալի: Եւ ասէ
Ասանէթ ցայրն. Են առ իս եօթն կուսանք սննդա-
կիցք իմ. ի միում գիշերի ծնեալք ես և նոքա. և ես
սիրեմ զնոսա որպէս զքորս իմ. կոչեցից աստ՝ զի օրհ-
նեսցես զնոսա, որպէս և օրհնեցեր զիս: Եւ ասէ այրն.
Կոչեա: Եւ կոչեցեալ կացոյց զնոսա առաջի առնն. և
ասէ ցնոսա այրն. Օրհնեսցէ զձեզ Տէր Աստուած բար-
ձրեալն. եղիջիք սիւնք եօթն քաղաքի[3], և ի ձեր վե-
րայ հանգիցէ օրհնութիւն Տեառն յաւիտեանս ժամա-
նակաց: Եւ ասէ ցԱսանէթ. Փոխեա ի բաց զսեղանդ
տեղւոյդ: Եւ Ասանէթ էառ զսեղանն ի տեղւոջէն
դարձաւ ի միւս կողմն, զի դիցէ զսեղանն ի տե-
ղւոջն իւր. և այրն աներևոյթ եղեւ յԱսանեթայ: Եւ
տես Ասանէթ որպէս կառս՝ զի գնային[4] յարևելս
երկինս. և կառքն էին որպէս զհուր, և ձիք նորա
որպէս փայլակն, և այրն այն կայր ի վերայ կառացն
այնորիկ: Եւ ասէ Ասանէթ. Անմիտս յանդուգս, զի
խօսեցայ համարձակութեամբ և ասացի՝ թէ մարդ եկն
ի սենեակս իմ, և ոչ գիտացի՝ թէ հրեշտակ Տեառն
եկն այսօր յերկնից առ իս. և ահա գնաց ի տեղի
իւր: Եւ ասէ. Քաւեա զիս, Տէր իմ, և խնայեա յա-
ղախին քո. վասն զի խօսեցայ առաջի քո յանդգնա-
բար անգիտութեամբ զամենայն զբանս իմ: Եւ մինչ-
դեռ զմտաւ ածէր Ասանէթ վասն այսորիկ, և ահա

1. Ա և Գ. յաւելուն չեր:
2. յԱ. աստ թուղթ անկեալ է:
3. Բն. քաղաքին [illegible]:
4. Գ. գնային ընդ յարևելս:

մանուկ մի ընթացեալ ի սպասաւորացն Պետափրեայ
և ասէ. Ահա Յովսէփ զօրաւորն Աստուծոյ գայ ա
մեզ. զի կառքն[1] առաջի գաւթիս է։ Եւ փութաց
Ասանէթ և կոչեաց զդայեակն իւր՝ որ էր ի վեր
ամենայն ստացուածոցն, և ասէ. Փութա և կազմ
զտաճարն, և արա ընթրիս ազնիւս վասն Յովսեփայ զ
րաւորին Աստուծոյ, որ գայ աստ այսօր։ Եւ տեսե
զնա դայեակ իւր, և ահա ի վայր անկեալ էին երե
Նորա ի կարօտութենէ կերակրոց եօթն աւուրցն.
տրտմեցաւ յոյժ, և ելաց. և կալաւ զաջոյ ձեռա
Նորա, և համբուրեաց զնա, և ասէ. Զի՞ ես, որդեա
զի՞ այսպէս ի վայր անկեալ են երեսք քո։ Ասէ Աս
նէթ. Ցաւ ծանր անկաւ զգլխով իմով, և քուն հ
տաւ յաչաց իմոց. վասն այնորիկ վատեալ են երե
իմ։ Եւ չոգաւ դայեակ Նորա և պատրաստեաց զտ
ճարն, և կազմեաց զընթրիսն։ Եւ յիշեաց զայրն
զպատուիրանս Նորա. և փութացեալ եմուտ ի սենեա
իւր երկրորդ, ուր էին սապատք զարդուց Նորա.
բացեալ զարկղն մեծ, և եհան զագանելիսն[3] իւր հա
նութեան զառաջինն և զընտիրն՝ իբրև զփայլակն,
զգեցաւ զնա. և ածաւ զգօտին ոսկի և զթագաւոր
կան, որ էր բեւեռօք յօրինեալ ազգի ազգի. և ի ձե
և յոտս իւր ագաւ[4] ապարանջանս ոսկի, և զար
պատուականօք զարդարեաց զպարանոց իւր, յոր
էին ակունք պատուականք յեղյեղեալք՝ անհամար
բիւրք. և պսակ ոսկի եդեալ ի վերայ գլխոյ Նոր
և[5] էր պսակին աջոյ կողմանէն՝ հանդէպ ճակատ
ակն՝ ակունք մեծ աստի և անտի, վեց ակունք պատու
կանք և մեծագինք. և ամարանոց արկեալ զգլուխ իւ
որպէս զհարսն. և առ զգաւազանն թագաւորական
ձեռին իւրում։ Եւ յիշեաց Ասանէթ զբանս դայեկ
իւրոյ, որ ասաց Նմա՝ թէ տրտմեալ են երեսք քո. յո

1. Գ. վասն զի չարաչարեցին Նորա առաջի։
2. ԺԳ. չիք զի՞ ես։
3. Գ. զարշանելիս իւր։
4. Գ. արջառ։
5. ԺԳ. պսակաւն թագաւ ինչ մ... չև և ամարանոց։

ոց եհան և տրտմեցաւ յոյժ, և ասաց. Եթէ դէմք մ վառեալք են, եթէ տեսանիցէ զիս Յովսէփ՝ ար-համարհէ զիս։ Եւ ասէ ցսննդակիցն իւր. Բեր ինձ ւր յատակ յաղբերէն և լուացից զերեսս իմ։ Եւ բե-եալ արկ ի դաշխուրանն. և խոնարհեալ Ասանէթ՝ զի ւացէ զերեսս իւր. և տեսեալ զդէմս իւր ի ջուրն՝ ի էին որպէս զարեգակն, և աչք նորա որպէս զա-ուսեակ զի ծագէ, և գնացք ոտից նորա որպէս զա-օսս հարթ և գեղեցիկս. այտք նորա կարմիր որպէս տորս նռան, և շրթունք իւր որպէս զվարդ փթթեալ՝ որժամ ի հակուկացն ի դուրս վազէ, ատամունք նո-ա[1] որպէս զաշտարակ գեղեցիկ։

Եւ այսպէս տեսեալ Ասանէթ զինքն ի ջուրն, և ու-ախացաւ ուրախութիւն մեծ, և ոչ եւս լուաց զե-եսս իւր։ Եւ եկեալ դայեակն ի պատմել նմա վասն ամենայնի՝ զոր ինչ հրամայեաց նմա. և եղեւ իբրեւ տես զնա՝ հիացաւ և եկաց յափշտակեալ[2] իբրեւ ամս երկուս. և երկեաւ երկիւղ մեծ ի տեսլենէ նո-ա, և խոնարհեալ յոտս նորա, ասէ. Զի՞նչ է այս, րիկին իմ, և կամ ուստի՞ է այդ մեծ գեղեցկութիւնդ, աքանչելի և հրաշալի. կարծեմ թէ տէր Աստուածն կնից ընտրեաց զքեզ ի հարսնութիւն Յովսեփայ։ Եւ ինչ դեռ խօսէին՝ ահա եհաս եկն մանուկ մի, և ասէ Ասանէթ. Ահաւասիկ Յովսէփ առ դուրսն գաւթիս։ Եւ փութացեալ Ասանէթ՝ էջ ընդ սանդուխսն եօթն ասանօք ի պատահումն Յովսեփայ. և եկաց ի փո-ացս ապարանիցն։ Եւ եմուտ Յովսէփ ի գաւիթն, և աւկեցան դրունքն, և արտաքոյ մնացին ամենայն օ-տարականքն։ Ասանէթ ել ի փողոցն ի պատահումն Յով-սեփայ։ Եւ տեսեալ զնա Յովսէփ, և զարհուրեցաւ յոյժ գեղեցկութեան նորա, և ասէ. Ո՞վ ես դու, ատմեա՛ ինձ վաղվաղակի։ Եւ նա ասէ. Ես եմ ա-

1. Գ. Նորա [illegible] գեղեցիկ որ-պէս [illegible] է պար-կալ, և հեր գլխոյ նորա իբրև զայգի է դալար լցեալ պտղով. [illegible] պարանոց նորա որպէս զաշտա-րակ։

2. Գ. ապշեալ։

ղախին քո Ասանէթ, որ ըստ հրամանի քում զամե-
նայն զկուռսն ի բաց ընկեցի և կորուսի. և այր ոմ
եկն այսօր ետ ինձ հաց կենաց և կերայ. և բաժակ
օրհնութեան արբի. և ասէ ցիս. Ահա ետու զքեզ հարս
Յովսեփայ, և նա եղիցի քեզ փեսայ յաւիտեանս ժա-
մանակաց. այլ նա ասաց ցիս՝ թէ ոչ եւս կոչեսցի
Ասանէթ, այլ Քաղաք ապաւինի. վասն զի քեւ ա-
պաւինեսցին ազգք բազումք ի տէր Աստուած բար-
ձրեալն: Եւ ասաց ցիս. Գնասցիս առ Յովսէփ և խօսե-
ցայց յականջս նորա զբանս իմ վասն քո: Եւ այժմ
դու ճանաչես, տէր իմ, եթէ եկն այրն այն առ քեզ
և խօսեցաւ ընդ քեզ զբանս իմ: Եւ ասէ Յովսէփ
ցԱսանէթ. Օրհնեալ ես դու ի Տեառնէ Աստուծոյ
բարձրելոյն. վասն զի Տէր Աստուած հիմնաւորեաց
զպարիսպ քո[1] անդամանդեայ՝ պարիսպ կենդանու-
թեան. վասն զի բազումք կենդանիք որդիք մարդկան
բնակեսցեն ի Քաղաքիդ ապաւինի, և Տէր Աստուած
թագաւորեսցէ նոցա յաւիտեանս ժամանակաց: Զի
այրն այն եկն այսօր առ իս, և ըստ բանիցս այսոցիկ
խօսեցաւ վասն քո: Այժմ ե՛կ առ իս, կոյս սուրբ.
ընդէ՞ր կացեր հեռի յինէն: Եւ ամբարձ զձեռն իւր
և կոչեաց զԱսանէթ[2]. և եկն առ Յովսէփ, և անկաւ
ի վերայ գրկաց նորա. և կենդանացան հոգիքն նո-
ցա, և լցան ուրախութեամբ: Եւ ողջունեալ Յովսէփ
զԱսանէթ, ետ նմա հոգի կենդանութեան և հոգի
իմաստութեան և հոգի ճշմարտութեան. և շաղապա-
տեալք ընդ միմեանս՝ բազում ժամս զուարճանային
ընդ իրեարս: Եւ ասէ Ասանէթ. Ե՛կ այսր, տէր իմ,
մո՛ւտ ի տունս մեր. զի և ես պատրաստեցի զտաճար
մեր, և կազմեցի ընթրիս մեծամեծս: Եւ կալեալ զձե-
ռանէ նորա՝ արկ ի տունն. և նստոյց յաթոռ հօր
իւրոյ. և եբեր ջուր՝ զի լուասցէ զոտս նորա: Եւ ա-
սէ Յովսէփ. Եկեսցէ մին ի կուսանացդ և լուասցէ
զոտս իմ: Ասէ Ասանէթ, թէ Ոչ այդպէս, տէր իմ

1. Գ. քո է Բարձրեալն պարգեւ քո:
2. Գ. յաւելու և փոխեցաւ Ասանէթ:

յայսմ հետէ ես եմ աղախին քո. և ընդէ՞ր է քեզ այդ, զի ա՛յլ ոք լուացէ զոտս քո. վասն զի ոտքդ քո ոտք իմ են, և անձն քո՝ անձն իմ. և բռնադատեաց զնա և լուաց զոտս նորա։ Եւ տեսանէր Յովսէփ զի ահա ձեռք նորա էին որպէս զձեռս կենդանութեան, և մատունք նորա էին որպէս գրիչ արագագրի։ Եւ զկնի այսորիկ կալաւ Յովսէփ զաջոյ ձեռանէ նորա, և համբուրեաց զնա. և Ասանէթ համբուրեաց զգլուխ նորա. և նստաւ ընդ աջմէ նորա։ Եւ եկին հայր և մայր նորա յագարակէ իւրեանց, և ամենայն ազգականքն նորա. և տեսին զԱսանէթ որպէս ի տեսլեան լուսոյ, և էր գեղեցկութիւն նորա որպէս գեղեցկութիւնս երկնայինս. և[1] տեսին զնա զի նստէր ընդ Յովսեփայ, և զգեցեալ էր հանդերձ հարսանեաց. և զարհուրեցան և ապանչացան վասն գեղեցկութեան նորա. և ետուն փառս Աստուծոյ՝ որ կենդանի առնէ զամենայն։ Եւ զկնի այսոցիկ՝ կերան և արբին և ուրախ եղեն։ Եւ ասէ Պետափրէս ցՅովսէփ. Ի վաղիւն կոչիցես զնախարարս և զմեծամեծս Եգիպտացւոց, և արարից ձեզ հարսանիս, և առցես զդուստր իմ զԱսանէթ քեզ ի կնութիւն։ Եւ ասէ Յովսէփ. Ոչ այդպէս. այլ վաղիւն գնացից առ Փարաւոն արքայ, վասն զի նա իմ է որպէս զհայր, և կարգեաց զիս իշխան ի վերայ երկրի. և խօսեցայց վասն Ասանեթայ յականջս նորա, և նա տացէ զԱսանէթ ինձ ի կնութիւն։ Եւ ասէ Պետափրէս. Երթ ի խաղաղութիւն։ Եւ մնացեալ Յովսէփ զօրն զայն առ Պետափրէս, բայց ոչ ննջեաց ընդ Ասանեթայ. վասն զի ասէր Յովսէփ՝ թէ ոչ վայել է առն աստուածապաշտի նախ քան զհարսանիսն՝ ննջել ընդ ամուսնոյ իւրոյ։ Եւ յարեաւ ընդ առաւօտն Յովսէփ, և չոգաւ առ Փարաւոն, և ասէ ցնա. Տո՛ւր ինձ զԱսանէթ զդուստր Պետափրէ քրմի ի կնութեան, յԱրեգ քաղաքէն։ Եւ ասէ Փարաւոն. Ո՞չ ահա[2] զնա խօսեալ էր քեզ[3]

1. յԳ. տող մի պակասէ։
2. Ա. ահա կոչեցի քեզ ի հարսանութիւն։
3. Գ. քեզ ի սկզբանէ և եղիցի քեզ ի հարսանութիւն։

ղախին քո Ասանէթ, որ ըստ հրամանի քում զամենայն զկուռսն ի բաց ընկեցի և կորուսի. և այր ոմն եկն այսօր ետ ինձ հաց կենաց և կերայ. և բաժակ օրհնութեան արբի. և ասէ ցիս. Ահա ետու զքեզ հարսն Յովսեփայ, և նա եղիցի քեզ փեսայ յաւիտեանս ժամանակաց. այլ նա ասաց ցիս՝ թէ ոչ եւս կոչեսցիս Ասանէթ, այլ Քաղաք ապաւինի. վասն զի քեւ ապաւինեսցին ազգք բազումք ի տէր Աստուած բարձրեալն։ Եւ ասաց ցիս. Գնացից առ Յովսէփ և խօսեցայց յականջս նորա զբանս իմ վասն քո։ Եւ այժմ դու ճանաչես, տէր իմ, եթէ եկն այրն այն առ քեզ և խօսեցաւ ընդ քեզ զբանս իմ։ Եւ ասէ Յովսէփ ցԱսանէթ. Օրհնեալ ես դու ի Տեառնէ Աստուծոյ բարձրելոյն. վասն զի Տէր Աստուած հիմնաւորեաց զպարիսպ քո[1] անդամանդեայ՝ պարիսպ կենդանութեան. վասն զի բազումք կենդանիք որդիք մարդկան բնակեսցեն ի Քաղաքիդ ապաւինի, և Տէր Աստուած թագաւորեսցէ նոցա յաւիտեանս ժամանակաց։ Զի այրն այն եկն այսօր առ իս, և ըստ բանիցս այսոցիկ խօսեցաւ վասն քո։ Այժմ ե՛կ առ իս, կոյս սուրբ. և ընդէ՞ր կացեր հեռի յինէն։ Եւ ամբարձ զձեռն իւր և կոչեաց զԱսանէթ[2]. և եկն առ Յովսէփ, և անկաւ ի վերայ գրկաց նորա. և կենդանացան հոգիքն նոցա, և լցան ուրախութեամբ։ Եւ ողջունեաց Յովսէփ զԱսանէթ, ետ նմա հոգի կենդանութեան և հոգի իմաստութեան և հոգի ճշմարտութեան. և շաղապատեալք ընդ միմեանս՝ բազում ժամս զուարճանային ընդ իրեարս։ Եւ ասէ Ասանէթ. Ե՛կ այսր, տէր իմ, մո՛ւտ ի տունս մեր. զի և ես պատրաստեցի զտաճարս մեր, և կազմեցի ընթրիս մեծամեծս։ Եւ կալեալ զձեռանէ նորա՝ արկ ի տունն. և նստոյց յաթոռ հօր իւրոյ. և եբեր ջուր՝ զի լուասցէ զոտս նորա։ Եւ ասէ Յովսէփ. Եկեսցէ մին ի կուսանացն և լուասցէ զոտս իմ։ Ասէ Ասանէթ, թէ Ոչ այդպէս, տէր իմ

1. Գ. քո է Տաբյշանս պարիսպ քո։
2. Գ. յաւելու և փոխեցաւ Ասանէթ։

յայսմ հետէ ես եմ աղախին քո. և ընդէ՞ր է քեզ այդ, զի ա՛յլ ոք լուացէ զոտս քո. վասն զի ոտքդ քո ոտք իմ են, և անձն քո՝ անձն իմ. և բռնադատեաց զնա և լուաց զոտս նորա: Եւ տեսանէր Յովսէփ զի ահա ձեռք նորա էին որպէս զձեռս կենդանութեան, և մատունք նորա էին որպէս գրիչ արագագրի: Եւ զկնի այսորիկ կալաւ Յովսէփ զաջոյ ձեռանէ նորա, և համբուրեաց զնա. և Ասանէթ համբուրեաց զգլուխ նորա. և նստաւ ընդ աջմէ նորա: Եւ եկին հայր և մայր նորա յագարակէ իւրեանց, և ամենայն ազգականքն նորա. և տեսին զԱսանէթ որպէս ի տեսլեան լուսոյ, և էր գեղեցկութիւն նորա որպէս գեղեցկութիւնս երկնայինս. և[1] տեսին զնա զի նստէր ընդ Յովսեփայ, և զգեցեալ էր հանդերձ հարսանեաց. և զարհուրեցան և սքանչացան վասն գեղեցկութեան նորա. և ետուն փառս Աստուծոյ՝ որ կենդանի առնէ զամենայն: Եւ զկնի այսոցիկ՝ կերան և արբին և ուրախ եղեն: Եւ ասէ Պետափրէս ցՅովսէփ. Ի վաղիւն կոչիցես զնախարարս և զմեծամեծս Եգիպտացւոց, և արարից ձեզ հարսանիս, և առցես զդուստր իմ զԱսանէթ քեզ ի կնութիւն: Եւ ասէ Յովսէփ. Ոչ այդպէս. այլ վաղիւն գնացից առ Փարաւոն արքայ, վասն զի նա իմ է որպէս զհայր, և կարգեաց զիս իշխան ի վերայ երկրի. և խօսեցայց վասն Ասանեթայ յականջս նորա, և նա տացէ զԱսանէթ ինձ ի կնութիւն: Եւ ասէ Պետափրէս. Երթ ի խաղաղութիւն: Եւ մնացեալ Յովսէփ զօրն զայն առ Պետափրէս, բայց ոչ ննջեաց ընդ Ասանեթայ. վասն զի ասէր Յովսէփ՝ թէ ոչ վայել է առն աստուածապաշտի նախ քան զհարսանիսն՝ ննջել ընդ ամուսնոյ իւրոյ: Եւ յարեաւ ընդ առաւօտն Յովսէփ, և չոգաւ առ Փարաւոն, և ասէ ցնա. Տո՛ւր ինձ զԱսանէթ դուստր Պետափրէ քրմի ի կնութեան, յԱրեգ քաղաքէն: Եւ ասէ Փարաւոն. Ո՞չ ահա[2] զնա խօսեալ էր քեզ[3]

1. յԳ. տող մի պակասէ:
2. Ա. ահա խոչեցի տեղ է հարցանութեան:
3. Գ. տեղ է ոխերմանց և երկեցի տեղ է հարցանութեան:

ի հարսնութիւն յայսմհետէ յաւիտենից ժամանակաց: Եւ առաքեաց փարաւոն, և կոչեաց զՊետափրէս[1]: Եւած զԱսանէթ և կացոյց առաջի փարաւոնի. և հիացաւ փարաւոն ընդ գեղեցկութիւն նորա, և ասէ. Օրհնեսցէ զքեզ Աստուածն Յովսեփայ, որդեակ. և հեղ̇ցէ ի քեզ գեղեցկութիւն քո յաւիտենից յաւիտենից. զի յիրաւի ընտրեաց զքեզ[2] տէր հարսն Յովսեփայ՝ յաւիտենից ժամանակաց. վասն զի սա է որպէս զորդի Աստուծոյ, և դու կոչեսցիս յայսմհետէ դուստր բարձրելոյն: Եւ ա՛ռ փարաւոն զՅովսէփ և զԱսանէթ, և եդ նոցա պսակս ոսկիս, որ էր[3] ի տան գանձուց յաւիտենից ժամանակաց[4]: Կացոյց փարաւոն զԱսանէթ յաջմէ Յովսեփայ, և եդ զձեռս ի վերայ գլխոյ, նորա և զաջ ձեռն ի վերայ գլխոյն Ասանեթայ, և ասէ. Օրհնեսցէ զքեզ[5] Աստուած բարձրեալն, և փառաւորեսցէ զքեզ[6] յաւիտենից ժամանակաց: Եւ դարձոյց զնոսա փարաւոն յիրեարս, և մերձեցոյց զնոսա, և համբուրեցին զմիմեանս: Եւ[7] զկնի այսորիկ արար փարաւոն հարսանիս և ընթրիս մեծամեծս և ուրախութիւնս բազումս՝ զաւուրս եօթն: Եւ կոչեաց[8] զամենայն իշխանս Եգիպտացւոց և զթագաւորս ազգաց: Եւ քարոզ կարդայր ամենայն երկրին Եգիպտացւոց, և ասէր. Ամենայն ոք որ գործէ զգործ զեօթն օր հարսանեաց Յովսեփայ և Ասանեթայ՝ մահու մեռցի: Եւ եղեւ յետ այսորիկ՝ եմուտ Յովսէփ առ Ասանէթ, և յղացաւ, և ծնաւ զՄանասէ[9] ի տան Յովսեփայ, ի փառս Աստուծոյ. ամէն:

•

1. Ա. յաւելու հանդերձ դարե-րովն:
2. Ա. յաւելու Աստուած Յովսե-փայ... ժամանակաց և կոչեցաւ:
3. Ա. որ էին ի տան զարդուց նորա ի սկզբանէ ժամանակաց:
4. Առ ի մինչև և դարձոյց պակա-սէ յԳ:
5. Ա. զնեղ:
6. յԱ. չիք զնեղ:
7. Ա. չունի և:
8. Ա. յաւելու յասաղ. յԳ. եր-կուս տողս պակասէ:
9. Ա. զՄանասէ և զԵփրեմ (Գ. և ունի զԵփրեմ) ի տանն Յով-սեփայ զօրութեամբն Աստուա-ծոյ կենդանւոյ:

# ՕՐՀՆՈՒԹԻՒՆ

## ԽՈՍՏՈՎԱՆՈՒԹԵԱՆ ԱՍԱՆԵԹԱՅ ԱՌ ԱՍՏՈՒԱԾ

1. Մեղայ, Տէր, մեղայ առաջի քո և բազում յանցեայ, ես Ասանէթ դուստր Պետափրեայ քրմի Արեգ քաղաքի[1], որ վերակացուն էր աստուածոցն ամենայնի։

2. Մեղայ, Տէր, մեղայ առաջի քո և յանցեայ և պաշտեցի զաստուածսն, որոց ոչ գոյ թիւ, և ուտէի ի զոհից նոցա։

3. Մեղայ, Տէր, մեղայ և յանցեայ. ես էի կոյս հպարտ և ամբարտաւան։

4. Մեղայ, Տէր, մեղայ առաջի քո և բազում յանցեայ. զհաց հեղձուցիկ կերայ և զբաժակ յորոգայթից արբի, և ուտէի ի սեղանոյն մահու։

5. Մեղայ, Տէր, մեղայ առաջի քո և բազում յանցեայ, և ոչ գիտէի զՏէր Աստուած երկնից, և ոչ յուսացայ ի բարձրեալն Աստուած ի կենդանին յաւիտենից։

6. Մեղայ, Տէր, մեղայ[3] և բազում յանցեայ. և յուսացայ ի մեծութիւն փառաց իմոց և ի գեղեցկութիւն, և էի հպարտ և ամբարտաւան։

7. Մեղայ, Տէր, մեղայ, և առաջի քո բազում յանցեայ, արհամարհելով զամենայն մարդով, և ոչ էր այր՝ որ երեւէր առաջի իմ։

[1] Ա. քաղաքին աստուածոցն որ վերակացու էր ամենայնի։

[2] Ա. Նախ զԳ. տունն գնէ և ապա զԲ։

[3] Ա և Գ. յաւելուն առաջի քո։

